





Իվան Կուզմիչն ապրում էր առաջին հարկի մի փոքր սենյակում, որի պատուհանները նայում էին բակ։ Առաջ նա ուներ երկու սենյակ՝ երկրորդ հարկում, բայց կնոջ մահից հետո բնակարանը փոխեց Կարպենկոների հետ։

Կարճահասակ, վտիտ, նիհար ու կնճռոտված դեմքով Իվան Կուզմիչը քայլում էր արագ և ամեն մի քայլը կատարելիս ասես թե կանգնում էր ոտքերի թաթերին։ Այդ ժամանակ նրա ականջների հետևից կախ ընկած մազերը ծիծաղելի կերպով թռչկոտում էին։

Իվան Կուզմիչն աշխատում էր կահույքի ֆաբրիկայում որպես ցեխի վարիչ։ Նրանից միշտ թարմ

Տպագրվում է թեթև կրճատումներով։

Վ. ՆԵՍՏԱՅԿՈ

# Լենինի դեմքը

տաշեղի և լաքի հոտ էր փչում։ Այդ հոտը շատ էր դուր գալիս Սլավկային։

Կուզմիչը շենքի բոլոր երեխաների մտերիմն էր։ Բայց Սլավկայի հետ նա իսկական ընկերություն էր անում, ինչպես մեծի հետ։ Գուցե դա նրանից էր, որ աշխարհում ամենից շատ Սլավկան էր սիրում աշխատել։ Նա կարող էր ժամերով, հոնքերը կիտած, փսփսալ նավի կամ ինքնաթիռի մոդելի վրա։ Սլավկան լռակյաց էր, իսկ Կուզմիչը հենց այդպիսի մարդկանց էր սիրում։ Եվ հետո՝ Սլավկան հայր չուներ։

Համարյա ամեն երեկո նրանք միասին նստում էին Կուզմիչի սենյակում, մեծ սեղանի մոտ, և լուռ աշխատում։ Երբեմն էլ նայում էին միմյանց ու ժպտում։ Դա նշանակում էր, որ գործը հաջող է գնում։

Մարտի վերջն էր։ Փոքրիկ պարտեզում բարձրացել էր եղրևանու թուփը։ Բաց պատուհանից զգացվում էր թարմ կանաչի բուրմունքը։

Սլավկան մտախոհ նայեց եղրևանու ճյուղերին և կամաց ասաց.

— Իսկ անտառում հիմա ինչքա՜ն գեղեցիկ կլինի…

Կուզմիչը ուշադիր նայեց նրան.

— Ուզո՞ւմ ես կիրակի օրը գնանք Գոլոսեևսկի, այո՞։ Մայրիկդ կթողնի՞։

— Մայրի՞կը։ Այո՛, ես կհամոզեմ։ Իհարկե, կթողնի։ Ուրեմն ճի՞շտ, գնա՞նք… — ուրախացավ Սլավկան։

… Մինչև Նրբենի լճակը նրանք գնացին տրոլեյբուսով։ Հետո խճուղիով բարձրացան վեր, ծռվեցին և մտան անտառ։ Սլավկան գնում էր առջևից, չգիտես ինչու՝ կռացած, զգույշ տրորելով նախորդ տարվա փափուկ և տամուկ տերևները. այդպես մտնում են սենյակ, երբ մեկը քնած է լինում։

Ճանապարհի մոտ խոտ և ծաղիկներ համարյա չկային։ Թափված էին լրագրի դեղնած կտորներ,

ՆՈՅԵՄԲԵՐ
№ 11 1964 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

պահածոյի ժանգոտված տուփեր։ Սակայն, բարեբախտաբար բնության նկատմամբ անտարբեր մարդիկ ծույլ են և հեռու գնալ չեն սիրում։ Անտառը գնալով ավելի մաքուր էր։ Կանաչ խոտերի կզզյակների վրա բոցավառվել էին խլածաղկի դեղին արևիկները։ Տեղ-տեղ էլ մանուշակներ էին երևում։

Հանկարծ Սլավկայի ականջին հասավ թռչնային մի զեղգեղանք, որը մերթ ընդհատվում ու նորից սկսվում էր։ Տղան պպզեց և շրթունքները հարմարեցնելով՝ սուլեց այդ նույն եղանակը։ Մացառուտից լսվեց պատասխանը։

Անմիջապես նրանց կողքին ճռճվեց մի ճյուղ։ Գորշ կրծքով և նախշավոր թևերով վարդագույն սերինոսը նստել էր բարակ ճյուղին և, գլուխը թեքած, նայում էր այն ծառին, որի ետևում թաքնըվել էին Սլավկան և Կուզմիչը։ Նորից լսվեց ծանոթ դայլայլը, բայց այս անգամ տխուր և հուսախաբ։ Ապա սերինոսը թռավ հեռացավ։

Իվան Կուզմիչի կնճռոտ դեմքն այնպես պայծառացավ, որ ակամայից Սլավկան էլ ժպտաց։ Հետո նրանք տեսան նարնջա-կանաչավուն մի ազնվասարեկ։ Սլավկան խուլ֊ուո ձայնով սկսեց սուլել։ Ազնվասարեկը հաճույքով արձագանքեց։

վոր ցերեկույթից հետո Սլավկան դպրոցից վերադարձավ տուն։ Նա գիրք էր կարդում, երբ ներս մտավ Իվան Կուզմիչը։ Առաջին անգամ՝ Կուզմիչը ինքն էր այցելում Սլավկային։ Տղան այնպես շփոթվեց, որ անգամ չպատասխանեց նրա բարևին. կարմրեց, իրար խառնվեց, հետո սկսեց արագ-արագ հավաքել բոլոր խորանարդիկները, որ թափված էին հատակին։

Կուզմիչը տոնականորեն էր հագնված և, հավանաբար, նոր էր դուրս եկել վարսավիրանոցից։ Նա Սլավկայի մայրիկին խնդրեց.

— Թույլ կտա՞ք, Սլավկայի հետ գնանք կինո։ Այսօր մեր ակումբում Լենինի մասին դոկումենտալ կինոնկար են ցուցադրում։

Սլավկան աղերսող հայացքով նայեց մորը։ Մայրը ժպտաց, և նրանք դո՜ւրս եկան տանից։

Մինչև սկսվելը կես ժամ կար։ Նրանք նստեցին ակումբի կիսամութ, համարյա դատարկ ճեմասրահում։

— Իսկ դու գիտե՞ս, Սլավկա, ես էլ կամ այս ֆիլմում...

— Ի՞նչ, — չհասկացավ Սլավկան։

— Ասում եմ՝ ես էլ կամ այս ֆիլմում, — ժըպտաց Կուզմիչը։ — Հիմա ես էլ չեմ հավատում...



Բայց շուտով Սլավկան ձանձրացավ և լռեց։ Այդ ժամանակ Իվան Կուզմիչը կամաց հազաց և կոկորդային, խուլ֊ուո ձայն արձակեց։ Սլավկան զարմացած նայեց նրան։ Եվ հանկարծ, միանգամայն անսպասելի, ազնվասարեկն արձագանքեց։ Կուզմիչի դեմքը հուզմունքից փայլեց։ Նա նորից սկսեց ազնվասարեկի երգը և այս անգամ ավելի փութաջանորեն, բայց... սխալ։

... Վլադիմիր Իլյիչի ծննդյան օրվա հանդիսա-

ճիշտ է, բազմության մեջ. ընդամենը մի պահ, բայց կամ։

Կուզմիչի հուզմունքը փոխանցվեց Սլավկային, և նրա սիրտն սկսեց բաբախել։ Կուզմիչը նայում էր հատակին և խոսում էր կմկմալով։ Նա սովոր չէր և չէր կարող իր մասին պատմել։

— Ուրեմն այսպես, տասը տարեկան էի, երբ ընկա Մոսկվա։ Դա տասնութ թվականին էր։ Գերմանացիները գրավել էին Ուկրաինան։ Ե՛վ հորս,

և՛ մորս, և՛ ավագ եղբորս՝ մեկ օրում... Մնացել էի մենակ։ Գիտեի, որ Մոսկվայում է ապրում իմ մորեղբայրը։ Թե ինչպես Ռոստովից հասա Մոսկվա, կարելի է մի գիրք գրել։ Երկու ամիս։ Մի օր կպատմեմ։

Ուրեմն հասա Մոսկվա, փնտրեցի քեռուս։

Քեռիս պահակ էր Կրեմլում։ Նա ապրում էր զորանոցում և ոչ ոքի իր մոտ վերցնել չէր կարող։ Ինձ տեղավորեց իր ծանոթներից մեկի մոտ, որն ապրում էր Պրեսնյայում։ Ես հաճախ վազում էի քեռուս մոտ։ Իհարկե, միայն մուտքի մոտ էի պտտվում։ Կրեմլի պահակներն այնպես խիստ էին։ Մի անգամ նույնիսկ իրեն՝ Լենինին էլ առանց անցաթղթի չէին ուզում Կրեմլ թողնել։

Լենինին առաջին անգամ ես տեսա հեռվից։ Նա անցնում էր Մեծ պալատի դիմացի մայթով։ Մուգ կոստյումով էր և իր հանրահայտ կեպիով, իսկ թավշյա օձիքով վերարկուն գցել էր ուսերին։

Երկրորդ անգամ Լենինին տեսա շատ մոտիկից։ Դա այնպիսի հանդիպում էր, որ ամբողջ կյանքումս չեմ մոռանա։ Մոտենում էր Հոկտեմբերի տարեդարձը։ Սովետական իշխանության առաջին տարեդարձը։ Այդ օրը քեռիս պահակ էր կանգնելու Սպասսկյան դարպասի մոտ։ Ես վաղուց էի նրան խնդրել, որ թույլ տա՝ Լենինին մոտիկից տեսնեմ։ Քեռիս ոչ մի կերպ չէր համաձայնում, չէր ուզում կարգապահությունը խախտել։ Բայց ես այնպես էի խնդրում, այնպես էի աղերսում, որ քեռիս թույլատրեց, միայն խստագույն պայմանով՝ որպեսզի ոչ ոք ինձ չտեսներ։

Աշխատանքից հետո Լենինը սիրում էր զբոսնել ներքևում, Կրեմլի պատի տակ ձգվող սիզամարգի երկայնքով։

Ես նախօրոք թաքնվել էի թփերի մեջ, և սրտատրոփ սպասում էի։ Քիչ անց հայտնվեց Իլյիչը։ Առանց վերարկուի, կեպիով, պիջակի կոճակներն արձակ, ձեռքերը՝ շալվարի գրպաններում։ Արագ քայլերով նա գալիս էր ուղիղ իմ կողմը։ Եվ չեմ հասկանում՝ արևի՞ց էր աչքերը կկոցում, թե՞ ժպտում էր։ Մի խոսքով, աչքերը փայլում էին։ Սիրտս այնպես ուժգին էր բաբախում։ Քարացել էի, վախենում էի շարժվել։



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Իլյիչը չնկատեց ինձ և անցավ կողքիցս։ Հետո նույն արագությամբ ետ վերադարձավ։ Կարծես, ոչ թե զբոսնում էր, այլ ինչ-որ տեղ շտապում։ Աչքս նրանից չէի կտրում։ Ոտքերս թմրել էին, ոչինչ չէի զգում։ Մեկ էլ տեսնեմ, բոլորովին մոտիկ, իմ կողքից անցնում է Իլյիչը և ժպտում։ Պարզ տեսնում եմ՝ ուրախ ժպտում է։ Այդ ժպիտը հնարավոր չէ նկարագրել, այն պետք էր տեսնել, զգալ և ընդմիշտ պահել սրտում։

Այնքան թանկագին, այնքան անգնահատելի էին այդ րոպեները ինձ համար... Այդ րոպեին ինձ, միայն ինձ էր ժպտում Լենինը։ Չնայած Իլյիչի մտքով էլ չէր անցնում, որ ես տեսնում եմ իրեն։

Քեռուս ես անհարմար դրության մեջ չդրեցի՝ ինձ ոչ ոք չտեսավ։

Իսկ նոյեմբերի յոթին Կար-

*միր հրապարակում տոնվեց Մեծ Հոկտեմբերի առաջին տարեդարձը։ Իլյիչը հանդես եկավ ճառով։ Բացի դրանից, նա բացեց Մարքսի և Էնգելսի ժամանակավոր հուշարձանը և Կրեմլի պատի վրա ամրացված «Խաղաղության և եղբայրության համար զոհված մարտիկների» հուշատախտակը։*

*Ես կանգնել էի առաջին շարքում, կարմիր բանակայինների կողքին։*

*Երբ հուշարձանը բացեցի, Իլյիչը մի պահ նայեց հուշարձանին, ապա՝ իրեն շրջապատող մարդկանց, և ժպտաց։ Այդ ժպիտը այնքան ծանոթ էր ինձ, այնքան հարազատ...*

*Լենինից մի քիչ հեռու, մեկը կանգնել էր եռոտանու վրա դրված արկղի մոտ և անվերջ պտտում էր բռնակը։ Ես, իհարկե, այն ժամանակ չգիտեի, որ այդ մարդը կինոօպերատոր էր և որ հետո...*

*Իվան Կուզմիչը չվերջացրեց։ Նրանք արդեն նստել էին դահլիճում և հենց այդ ժամանակ էլ լույսերը մարեցին։*

*Սլավկան երբեք այդպիսի հափշտակությամբ չէր նայել էկրանին։ Էկրանի վրա կենդանի Լենինն էր։ Իսկ Սլավկայի կողքին նստել էր մի մարդ, որը սեփական աչքերով տեսել էր Լենինին։*

*... Հոկտեմբերի առաջին տարեդարձը։ Փայտե բարձր ամբիոնից խոսում է Իլյիչը։ Ահա նա Սվերդլովի կողքին։*

*Լենինը ժպտում է։*

*... 1919 թվականի մայիսի մեկ։ Լենինը ավտոմեքենայի մեջ է, կողքին՝ երեխաներ։*

*Լենինը ժպտում է։*

*1919 թվականի նոյեմբերի յոթ։ Լենինը Կարմիր հրապարակում՝ Հոկտեմբերի երկրորդ տարեդարձի տոնակատարության ժամանակ։ Զրույց է գալիս։ Ձեռքը գլխարկին մոտեցնելով, Լենինը ողջունում է շքերթը։ Երեխաները սեղմվում են դեպի նա։*

*Եվ նորից ժպտում է Իլյիչը։*

*1920 թվականի մայիսի մեկ։ Արև։ Գարուն։ Հիմնադրվում է «Ազատագրված աշխատանք» հուշարձանը։ Ձեռքը տանելով դեպի կեպին՝ Լենինը ժպտում է դահլիճում նստած բոլոր մարդկանց։*

*Այո, այդ ժպիտը չի կարելի նկարագրել. այն պետք է տեսնել, զգալ և ընդմիշտ պահել սրտում...*

*... Կինոթատրոնից նրանք դուրս եկան առանց մի բառ փոխանակելու։ Փողոցում նույնպես լուռ էին։*

*Հանկարծ Սլավկան կանգ առավ։ «Իսկ դու գիտե՞ս, Սլավկա, ես էլ կամ այս ֆիլմում...»*

*Սլավկան չհամարձակվեց նայել Կուզմիչին, չէ՞ որ ինքն էլ չէր նկատել Կուզմիչին։ Նա պարզապես մոռացել էր այդ և նայում էր միայն Լենինին։*

*Վերջապես Սլավկան բարձրացրեց աչքերը։*

*Իվան Կուզմիչը ժպտաց։*

*— Ես էլ մոռացա, չնկատեցի։ Դա միայն մի պահ էր։*

*Կուզմիչը ժպտաց։*

*Եվ ինչ-որ ծանոթ, շատ ծանոթ մի բան, հենց նոր տեսածը նշմարվեց նրա ժպ՛տի մեջ։*

*Եվ Սլավկան մտածեց՝ լավ մարդիկ, իհարկե, տարբեր են, բայց նրանց մոտ կա ընդհանուր մի բան, նրանք բոլորն էլ միատեսակ են ժպտում։ Եվ հետո Սլավկան մտածեց, որ բոլոր լավ մարդկանց ժպիտները ինչ-որ բանով նման են Իլյիչի ժպիտին։*

**Թարգմ. Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆ**

# ԱԼՅԱԿՆ ՈՒ ՆԱՎԱԿԸ

*ՌԱՖԻԿ ԲԱՋԻԿՅԱՆ*

Եղեգների մեջ, լճակի ափին,
Նիրհում է փոքրիկ-փոքրիկ մի նավակ։
Հանկարծ նրա մոտ վազեց մի ալյակ՝
Եվ մեղմ ճոճելով նրան իր կրծքին՝
Տարավ ջրերի հեռուն կապուտակ։

Լճակի հեռուն կապույտ էր այնպես,
Ու լողում էին նրանք անդորրիկ։
Բայց ծագեց հանկարծ ահեղ մի մրրիկ,
Եվ լիճը մթնեց ու ալեկոծվեց,
Խառնվեցին իրար նավակ ու ալիք։

Ա՜խ, խեղդվում էին ահեղ փոթորկում
Ալյակն ու սիրուն նավակը փոքրիկ.
Բայց ծագեց հանկարծ ջինջ, ոսկորիկ
Արևը այնքան կարմիր ու խնդուն,
Եվ խաղաղվեցին քամի ու մրրիկ։

Եվ խաղաղ կապույտ լճակի վրա,
Արևի ոսկով ողողված, խնդուն,
Նավակը կապույտ, ալյակը ժպտուն,
Մեղմ վետվետալով, խաղալով զվարթ,
Ափ էին գալիս, գալիս էին տուն։

# Ես լսում եմ ձեզ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Սրահը մեծ է:

Այնքան մեծ է, որ ինձ ճնշված եմ զգում թափանցիկ գմբեթի տակ, իսկ պատերն իրենց մետաղական փայլով սեղմում են ինձ, սեղմում են, ու ես կծկվում եմ բազկաթոռի վրա:

Իմ շուրջը լռություն է:

Եվ այդ լռությունը համառորեն չի կամենում լքել ինձ այստեղ հայտնվելուս առաջին իսկ օրվանից: Ես փորձել եմ տրոհել այդ լռությունը բանալիով հարվածելով մետաղյա պատերին կամ միացնելով երաժշտական մեքենան ու ամբողջ կայանը լցնելով ականջ ծակող հնչյուններով: Բայց միևնույն է, ինձ չի հաջողվել փախչել լռությունից, որովհետև այդ ամենը եղել է կեղծ, արհեստական աղմուկ:

Շուտով կժամանի ինձ փոխարինողն ու ես նույն տիեզերանավով Երկիր կվերադառնամ: Ու որքան մոտենում է այդ օրը, ես այնքան նյարդային ու անհամբեր եմ դառնում:

Ես սեղմում եմ կապույտ կոճակը, և սրահի պատերից մեկը դառնում է թափանցիկ: Սակայն դա ոչ մի նշանակություն չունի: Դրսում անթափանց մուժն է: Ես երբեք չեմ տեսել, թե ինչ կա կայանի պատերից այն կողմ: Չեմ տեսել նույնիսկ այն ժամանակ, երբ առաջին անգամ ոտք դրեցի այս մոլորակի վրա: Տիեզերանավից փակ անցումով ես տեղափոխվեցի ամենագնաց մեքենայի մեջ, և այդ ինքնաշարժ մեքենան իր արդեն սերտած ճանապարհով ինձ բերեց կայան:

Հաջորդ օրը սրահի թափանցիկ գմբեթը մի փոքր միայն շառագունեց ու ես կռահեցի. այդ տիեզերանավն էր, որ Երկիր վերադարձավ 7գ81 աստղի միակ մոլորակից:

Ու ես մնացի մենակ:

Մուժ, լռություն և Ռոբբի:

Ռոբբին:

Ես եմ այդպես կնքել նրա անունը: Ռոբբի: Իսկական անունը թվերի ու տառերի մի անիմաստ շարան է. բավականին երկար ու ծանծրալի:

Գլուխս հենում եմ բազկաթոռի թիկնակին ու փակում աչքերս: Սրահը լցվում է կոմիտասյան հնչյուններով: Դա ավտոմատն էր, որ կռահեց իմ ցանկությունը և բարեհաճությամբ կատարեց այն:

Բայց երկար չի տևի այս փոքրիկ հանույքը: Ուր որ է, ներս կմտնի իմ հավատարիմ սպասավորը, դայակը, շեֆը: Ներս կմտնի Ռոբբին, քարացած դիմագծերով այդ ռոբոտը, որի ծպյունը ևս նյարդայնացնում էր ինձ, որովհետև նույնքան կեղծ էր ու արհեստական՝ այս զարհուրելի լռության մեջ:

Ես լսում եմ նրա զգույշ քայլվածքի ձայնը: Զգում եմ, թե ինչպես է բացվում դուռը, բայց չեմ շրջվում: Ես նրան չեմ տեսնում, սակայն գիտեմ, մոտենում է ինձ: Մոտենում է և կանգնում գլխավերևս:

— Արդեն ժամանակն է, — ասում է Ռոբբին: Երաժշտությունը լռում է:

— Գիտեմ,— ասում եմ ես: — Գիտեմ, որ արդեն ժամանակն է:

— Դու տխուր ես: — Ռոբբին առաջին անգամը չէ, որ նկատում է այս: Ես այդ բառը լսել եմ տասը, քսան, հիսուն, հարյուր անգամ: Ամեն օր:— Դու տխուր ես ու մոռացել ես ինձ, — շարունակում է Ռոբբին: — Ինչո՞ւ ես ինձ մոռացել:

— Ես հիմա մարդկանց եմ միայն հիշում:

— Գնանք, — չոր-չոր ասում է Ռոբբին: — Հաղորդումից հետո ես մի շատ հետաքրքիր բան կպատմեմ քեզ: Եվ դու այլևս չես տխրի:

Ես հետևում եմ նրան:

Մենք դուրս ենք գալիս ընդարձակ սրահից, անցնում ենք միջանցքով ու քիչ անց հայտնվում հաղորդման սենյակում:

Ես նստում եմ ղեկավարման վահանակի առջև: Ու այդ պահից հանկարծ մոռանում եմ, որ գտնըվում եմ 7գ81 աստղի միակ մոլորակի վրա, որ ինձ շրջապատում են միայն մուժը, լռությունը և Ռոբբին: Մոռանում եմ, որ մենակ եմ տիեզերքի այս հեռավոր անկյունում:

Մի քանի րոպե հետո հաղորդումը կսկսվի: Ես այն ընդունում եմ 58-րդ շրջանից և տիեզերքը կտրել-անցնելիս արդեն թուլացած, ուժաթափ ռադիոալիքները դարձյալ վերահաղորդում եմ Երկիր:

Այնտեղ, տիեզերքի 58-րդ շրջանում արշավախումբը յուրացնում է մի նոր մոլորակ: Մարդիկ տառապում են, պայքարում ու երբեմն էլ զոհվում այնտեղ բնության դեմ մղվող այդ անհավասար մենամարտում: Ու իրենց տառապանքների, պայքարի ու զոհողությունների գնով ձեռք բերած տեղեկությունները կանոնավոր կերպով հաղորդում են երկրագնդին:

Ես միջանկյալ կայանի հերթապահն եմ: Եվ իրավունք չունեմ ձգձգելու, որովհետև կայանի պատերը հուսալի են, որովհետև ոչ մի վտանգ ու տառապանք ինձ չի սպառնում, որովհետև ունեմ մի շատ համեստ պարտականություն՝ ամեն օր ընդամենը մեկ ժամ նստել այս սենյակում, ընդունել ու վերահաղորդել անհասկանալի ռադիոազդանշանները, որոնք կարող են հանկարծ նաև վերջինը լինել: Կարող են լինել 58-րդ շրջանում գտնվող մարդկանց հրաժեշտի վերջին խոսքը մայր մոլորակին:

Ռոբբին էլ է պնդում, որ ես իրավունք չունեմ տխրելու և ձգձգելու: Բայց հենց որ Երկիր վերադառնամ, անպայման կպնդեմ, որ հերթապահը մենակ չլինի, որ կայանում աշխատեն երեք հոգի, ծայրահեղ դեպքում՝ գոնե երկուսը: Ռոբոտը մարդու հաշիվ չէ: Այդ բանում համոզվում ես այստեղ ժամանելուց մի քանի ամիս անց:



Հանկարծ սկսում են անհանգիստ թարթել ազդանշանային խայտաբղետ լամպերը, որովհետև ժամացույցի սլաքները ցույց են տալիս ճիշտ ժամը ինը: Հաղորդման սենյակը լցվում է բըզվոցով: Այս պահին կայանից հեռու մի տեղ երևի անհանգիստ դողում է հսկայական անտենան: Այդ անտենան ես երբեք չեմ տեսել: Եվ հնարավորություն էլ չունեմ տեսնելու: Բայց նրա անխափան աշխատանքի համար պահով եմ, որովհետև խընամողներ կան. դրանք Ռոբբիից շատ ավելի հիմար ռոբոտներ են…

Նույն տեղեկությունները մեկ այլ անտենայով ես հաղորդում եմ Երկիր: Ու դարձյալ թռչում են րոպեները: Թռչում են շատ արագ, աննշմարելի: Մինչև որ սենյակի դուռը բացվում է ու ես ընթափվում եմ Ռոբբիի ճռնչացող ձայնից.

— Վերջացրի՞ր:

— Այո, — պատասխանում եմ ես:

— Ուրեմն գնանք, գնանք, — առաջարկում է նա: — Ես մի շատ հետաքրքիր բան կպատմեմ քեզ:

Ես ծնոթքիս ափով շփում եմ դեմքս: Քրտնել եմ:

— Գնանք, — կրկնում է ռոբոտը, տեսնելով, որ ես տեղիցս չեմ շարժվում:

— Ինձ մենակ թող, — խնդրում եմ ես: — Հետո կգամ: Դու գնա: Ես խոստանում եմ լսել քո այդ հետաքրքիր պատմությունը: Բայց ոչ հիմա: Հետո: Լա՞վ: Դե գնա՛, գնա՛:

Ռոբբին զարմանքից թարթում է իր կանաչ աչքերն ու ետ-ետ գնում: Լսում եմ, թե ինչպես է փակվում դուռը, բայց համոզված եմ, որ միջանցքում կանգնած՝ նա շարունակում է հսկել ինձ:

Աթոռս քաշում եմ անկյունում գտնվող ապարատի մոտ: Առաջին անգամն է, որ մոտենում եմ այդ ապարատին: Դա ինձ պետք էր գալու այն ժամանակ միայն, երբ 7գ81 աստղի շրջանում հայտնվեր փոխարինողին բերող տիեզերանավը:

Միացնում եմ հաղորդիչ ապարատն ու ծնոթքս առնում միկրոֆոնը:

— Մեկ… երկու… երեք… չորս…— ստուգում եմ ես:

Մոխրագույն պատյանի վրա թարթում է կարմըրավուն լամպը:

— … Չորս… երեք… երկու… մեկ, — ասում եմ ես ու լռում:

Հետո նայում եմ շուրջս:

Ես մենակ եմ:

— Դու լսո՞ւմ ես ինձ, — շշուկով հարցնում եմ ես:

Պատասխան չկա: Գիտեի, որ պատասխան չի լինելու:

— Դու լսում ես ինձ, — համոզված կրկնում եմ ես: — Դու լսում ես ինձ: Ես ուզում եմ խոսել քեզ հետ: Ուզում եմ մի գաղտնիք հայտնել: Դու, իհարկե, ոչ ոքի չես ասի այդ գաղտնիքը: Ես մենակ ու տխուր եմ այս կայանում:

Լռում և շունչ եմ առնում: Ու նորից խոսում եմ շշուկով.

— Որպեսզի դու էլ չտխրես, ես կպատմեմ այն արջուկի մասին, որը կուլ տվեց իր երազը: Լա՞վ… Լինում է, չի լինում, մի արջուկ է լինում: Ձմեռնամուտին նա քաշվում է անտառի խորքում



գտնվող մի խուլ անկյուն և խորը քուն մտնում։ Քնում է մեկ շաբաթ, երկու շաբաթ... Հետո հանկարծ սաստիկ քաղց է զգում։ Իսկ դրսում ոռնում էր խստաշունչ բուքը և ուտելու ոչինչ չկար։ Արջուկը թաթը դնում է բերանն ու սկսում ծծել։ Ու հանկարծ... հանկարծ արջուկի դիմաց հայտնվում է մի կարմրաթուշ, կլորիկ մեղրաբլիթ։ «Դու ո՞վ ես», — հարցնում է արջուկը։ «Ես մեղրաբլիթն եմ, քո երազը, — պատասխանում է մեղրաբլիթը։ — Եկել եմ, որ դու ինձ ուտես»։ Արջուկը ուրախանում է ու, հո՛պ, միանգամից կուլ է տալիս կարմրաթուշ, կլորիկ մեղրաբլիթը։ Դու լսո՞ւմ ես ինձ... Մյուս անգամ արջուկին է մոտենում մի համեղ ձուկ։ «Ես քո երազն եմ, արջուկ», — ասում է ձուկը։ Արջուկն էլ, հո՛պ, կուլ է տալիս իր այս երազը ևս։ Ու երբ նա նույն ագահությամբ խժռում է նաև երազ ոզնուն, որը բեռնավորված էր համեղ հատապտուղներով, փշերը ծակծկում են բերանը և նա արթնանում է ցավից։ Գիտե՞ս, ինչ է պարզվում։ Արջուկը քնի մեջ կծել էր թաթը։ Ու արթնացել էր։ Բայց ոչինչ... Չէ՞ որ դրսում արդեն գարուն էր...

Ես լռում եմ։

— Հետաքրքիր էր, չէ՞, — քիչ անց, շշնջում եմ միկրոֆոնի մեջ։ — Այսօր այսքանը բավական է։ Իսկ վաղը՝ դարձյալ կհանդիպենք։

Ու անջատելով ապարատը, դուրս եմ գալիս հաղորդման սենյակից։

Ռոբբին առանց շփոթվելու ինձ է նայում։ Ես ժպտում եմ քթիս տակ։ Նա անխոս հետևում է ինձ։

— Ես մի շատ հետաքրքիր... — սկսում է Ռոբբին, բայց ես ընդհատում եմ նրան.

— Շնորհակալություն, Ռոբբի, — ասում եմ ես։

— Շնորհակալություն։ Մեկ ուրիշ անգամ, լա՞վ...

Ռոբոտը վիրավորվում է։ Բայց դա ինձ բոլորովին չի անհանգստացնում։ Մտնում եմ իմ ննջարանն ու պառկելով փափուկ ներքնակին, լսում եմ, թե ինչպես հեռու-հեռվից երգում է մի մեղմ ձայն։ Ու դարձյալ ժպտալով քթիս տակ, փակում եմ աչքերս։

Հաջորդ օրը, երբ սովորականի պես թռչում են վաթսուն ռոպեները, ես դարձյալ աթոռս մոտեցնում եմ փոքրիկ ապարատին և վերցնում միկրոֆոնը։

— Դու լսո՞ւմ ես, — ավելի համարձակ սկսում եմ ես։ — Մեր բակում մի հսկա թթենի ունեինք։ Երևի մոտ հարյուր տարեկան կլիներ։ Գուցե և ավելի։ Ամուր և հաստ ճյուղեր ուներ ու խիտ սաղարթ։ Ցածի ճյուղերին թութը մինչև ձմեռնամուտ խակ էր մնում։ Հետո, երևի, թափվում էր։ Ես մի քողտիկ էի սարքել թթենու վրա։ Ամռան շոգ օրերին բարձրանում էի իմ քողտիկն ու կարդում։ Երբեմն էլ քնում էի։ Դու լսո՞ւմ ես ինձ... Մի անգամ, քողտիկից իջնելիս, թթենու բնի մոտ մի կարիճ տեսա։ Նա թաքնվեց հաստ կեղևի ճեղքում։ Ու այդ օրվանից ես այլևս չբարձրացա իմ քողտիկը։

Երբ դուրս եմ գալիս սենյակից, դարձյալ տեսնում եմ միջանցքում համբերությամբ ինձ սպասող Ռոբբիին։

— Ես մի շատ հետաքրքիր պատմություն եմ պատմելու, — ասում է Ռոբբին անվրդով ձայնով։

— Հետո, Ռոբբի, հետո կպատմես,— ասում եմ նրան:

— Ինչո՞ւ տխուր չես,— հարցնում է նա:

— Տխո՞ւր չեմ... Մի՞թե,— զարմանում եմ ես:

Հետո նստում եմ մեծ սրահում և թափանցիկ պատից դիտում դրսի մութը, որի քուլաները գալարվում են անընդհատ ու ամենատարօրինակ ձևերն ընդունում: Լռությունն ու Ռոբբին ինձ չեն անհանգստացնում այլևս, որովհետև ես մտածում եմ այն մասին, թե ինչ եմ հաջորդ անգամ պատմելու իմ անհայտ բարեկամին:

— Իսկ հիմա ես կերգեմ քեզ համար,— մի օր էլ միկրոֆոնը շուրթերիս մոտեցնելով, ասում եմ ես:— Դու լսո՞ւմ ես:

Ու երգում եմ առանց քաշվելու.

Միայն մենք ենք, միայն մենք,
Էլ ոչ ոք չկա...

Իմ ձայնը երևի տհաճ է, բայց ես երգում եմ: Երբ երգն ավարտվում է, սենյակում մի պահ է միայն տիրում զարհուրելի լռությունը: Հետո բարձրախոսը հանկարծ պատասխանում է ինձ.

— Ես լսում եմ քեզ... Ես լսում եմ քեզ... Միայն մենք ենք... Միայն մենք... Աստղերի ու արևների հետ...

Ապշած նայում եմ շուրջս: Հետո սթափվելով գոռում եմ միկրոֆոնի վրա.

— Այդ ես եմ, կայանի հերթապահը... Մեկ, երկու, երեք, չորս...

— Ես լսում եմ քեզ... Ես լսում եմ քեզ...— ձայնն աստիճանաբար հեռանում է, հեռանում և ձուլվում է լռությանը: Անհայտ տիեզերագնացը երևի գնում է դեպի 58-րդ շրջանը:

— Էլ ոչ ոք չկա,— մրմնջում եմ ես ու դուրս գալիս հաղորդման սենյակից:

Միջանցքում Ռոբբիին տեսնելով, հանկարծ պայծառանում եմ ու ասում.

— Դու ուզում էիր ինձ մի շատ հետաքրքիր բա՞ն պատմել: Գնանք, սիրելիս: Գնանք, և պատմիր քո այդ ձանձրալի, անգիր արած հետաքրքիր պատմությունը:



# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Ձմեռնամուտ է, մշուշը ներմակ
Ծածկել է արդեն դաշտ, անտառ ու լեռ,
Քամին սուլում է, վազում թևարձակ,
Երգում է, կանչում՝ ձմե՜ռ է, ձմե՜ռ...

Բարձր լեռները նիրհում են ձյան տակ,
Վաղուց է իջել հովիվը սարից.
Ամպը չի գոռում, չի փայլում կայծակ,
Ու չի նվողում սարյակը ծառից:

Իսկ մանուկները խաղում են ուրախ՝
Առաջին ձյունի փաթիլների տակ.
Վաղը բլուրից կսահեն նրանք,
Կխաղան նորից չմուշկ ու սահնակ:

# ԽՈՐՀՈՒՐԴ

ԳՈՀԱՐ ԴԱՎԹՅԱՆ

*Բանաստեղծուհի Գոհար Դավթյանը նոր է վերադարձել Իրանից և անա Հայաստանում առաջին անգամ սկսեց գրել նաև մանուկների համար: Տպագրում ենք նրա մանկական բանաստեղծություններից մեկը:*

Սիրեք կյանքում երգ ու խնդում,
Ծառ ու ծաղիկ գեղեցկաթով,
Բայց առավել սիրեք անհուն
Ընկերներին ձեր հոգեթով:
Սիրեք խաղալ, բայց չափավոր,
Այն էլ դրսում, ոչ թե դասում,
Բայց սիրեցեք ավելի խոր,.
Վեհ կրթություն, գիրք ու ուսում,
Ջմոռանաք կյանքում սիրել
Միշտ ազնիվը, լավն ու բարին,
Եվ օգտակար, նեցուկ լինել
Ջեր հարազատ ծնողներին:
Եվ ողջ հոգով արևացող
Սիրեք հավետ ու ջերմագին
Ջեր լուսավոր ճամփեն բացող
Մեր գեղաթով հայրենիքին:

ՄԱՐՏԻՐՈՍ ԵՐԶՆԿԱՑԻՆ ԱՇԽԱՐՀԸ ԲՈԼՈՐԵՑ՝ ՆԱՎԱՐԿԵԼՈՎ ՔՐԻՍՏԱՓՈՐ ԿՈԼՈՒՄԲՈՍԻՑ ՀԵՏ

# Փոքր Գիրք Ճամփորդության

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Հայերեն մի փոքրիկ ձեռագիր, որ ճամփորդության համառոտ պատմություն է, օր ու գիշերների անհանգստություն բերեց ինձ։

Ձեռագրի հեղինակը՝ հայ, ոմն Մարտիրոս Երզնկացի, 1489 թվականի հոկտեմբերի 29-ին դուրս գալով Երզնկա հայրենի քաղաքից, Հայաստանից, ոտքով գնացել անցել է Արևմտյան աշխարհի շատ երկրներով, դրանց մեծ ու փոքր հարյուրավոր քաղաքներով... Ոտքի տակ է տվել Իտալիան, Գերմանիան, Ֆլանդրիան, Շվեյցարիան, Ֆրանսիան, Փորթուգալիան, Իսպանիան...

Բայց սա չէ նրա ճամփորդության մեջ այն զարմանալին, որ խլեց իմ հանգիստը։ Կատարվել է մի այլ, անհավանական թվացող դեպք։ Իսպանական Կադիս քաղաքը հասնելուց յոթ օր հետո, այս ոմն Մարտիրոս Երզնկացին դուրս է եկել Ատլանտյան օվկիանոս և, նավարկելով, բոլորել է աշխարհը։

Բոլորել աշխա՞րհը... Հենց այսպես էլ գրված է. «67 օրում աշխարհս բոլորեցինք...»

Սակայն ի՞նչ բան է «աշխարհ բոլորելը», և այդ տարօրինակ խոսքը չի՞ հիշեցնում աշխարհագրական մի հին պատկերացում երկրագնդի մասին։

Մարտիրոս Երզնկացու ժամանակի սխալ հասկացողությամբ, մարդկությունն աշխարհ է համարում երեք մայր ցամաք՝ Եվրոպան, Ասիան և Աֆրիկան։ Աշխարհի մի ծայրն է Իսպանիան ու Փորթուգալիան, մյուսը՝ Ճապոնիան ու Չինաստանը և սրանց շատ մոտիկ, Հնդկաստանը։ Ով ճամփորդել-նավարկել է աշխարհի մի ծայրից մյուսը, ուրեմն՝ բոլորել է աշխարհը։

Մարդկությանը հայտնի է միայն երեք նման նավարկություն։

Նախ՝ Մարկո Պոլոյի գրքում պատմածը իր և ավագ Պոլոների ճամփորդության մասին։ Դուրս գալով Վենետիկից՝ նրանք անցան «Հայաստանով և Թուրքեստանով», հասան մինչև «Մանգի», այսինքն՝ Չինաստան։ Հետո լողացին համատարած ծով-օվկիանոսով, անցան Հնդկաստանի, Ցեյլոն կղզու մոտով, Պարսից ծոցի ափերի երկայնքով և Տրապիզոնով կրկին վերադարձան իրենց հայրենի քաղաքը։

Ապա՝ Քրիստափոր Կոլումբոսի նավարկությունը՝ աշխարհի իսպանական ծայրից, օվկիանոսով Հնդկաստան անցնելու համար։ Նա դուրս եկավ Իսպանիայի Կադիս քաղաքից, նավարկեց Ատլանտյան համատարած ծովով դեպի արևմուտք, հասավ, ինչպես համոզված էր, Ճապոնիա, Չինաստան, Հնդկաստան և վերադարձավ տուն։

Եվ վերջապես՝ Վասկո դա Գաման, որ Փորթուգալիայից, այսինքն՝ նույնպես աշխարհի մի ծայրից, նավարկելով դեպի արևմուտք Աֆրիկայի շուրջը, այդ ճանապարհով առաջին անգամ հասավ Հնդկաստան և ետ վերադարձավ։

Կարդում, տասն անգամ ստուգում եմ այս ճամփորդությունների թվականները, Մարտիրոս Երզնկացու տնից դուրս գալու և տուն դառնալու ժամանակի հաշիվը...

Պարզ է, հիմա կարելի է ասել.

Պոլոների ուղևորությունից մոտ երկու հարյուր

տարի հետո է Մարտիրոս Երզնկացին դուրս եկել ճամփորդության։ Այս մոռանանք, այստեղ նա մաս չունի։

Վասկո դա Գաման նավարկել է ոչ թե Իսպանիայից, այլ Փորթուգալիայից, և վերադարձել է վերստին Փորթուգալիա 1499 թվականին, երբ Մարտիրոս Երզնկացին վաղուց արդեն տանն էր՝ Երզնկայում։

Իսկ Քրիստափոր Կոլումբո՞սը... Նա Ատլանտյան օվկիանոսով, Կադիս քաղաքից նավարկության է ելել 1492 թվականին... Ա՛յս է։

Ուրեմն ի՞նչ. Մարտիրոս Երզնկացին դուրս է եկել բաց օվկիանոս և նավարկել Քրիստափոր Կոլումբոսի՞ հետ, այն ժամանակ, երբ մեծ հայտնագործողը հասավ Ամերիկյան մայր ցամա՞ք...

Մտածում եմ այսպես և չեմ հավատում մտքիս։ Ինչպե՞ս թե՝ նավարկել է Քրիստափոր Կոլումբոսի հետ։ Իսկ ե՞րբ է Մարտիրոսը բարձրացել նավ։ Իսկ Կոլումբոսն ինչպե՞ս այդ ժամանակ է նավարկել և ո՞ւր է ուղևորվել, որտե՞ղ հասնել...

Գուցե այդ տարի նավարկել է մի ուրի՞շը, ասենք՝ Ամերիգո Վեսպուչին, և նա է եղել Մարտիրոսին նավի վրա առնողը։ Ամերիգոն, որի անունով հետո՝ 1507 թվականից, կոչվեց Կոլումբոսի հայտնագործած Նոր Աշխարհը...

Ենթադրություններ անելով ոչինչ չի ստացվի։ Ինձ պետք են գրքեր, քարտեզներ, փաստաթղթեր, տեղեկանքներ։ Ես գտնում եմ հնարավորը։ Ես սկսում եմ կարդալ ու որոնել, ստուգել, ճշտել բոլոր թվերն ու թվականները։

Ամենից առաջ անհրաժեշտ է իմանալ, թե ինչ էր կատարվում այդ 15-րդ տենդագին դարավերջում։ Եվ հարյուրերորդ անգամ, մտովի ու թղթի վրա, ես կենդանություն եմ կոչում ժամանակի պատմության ամենակարևոր դեպքերն ու դիպվածները։

Առասպելական հարուստ Հնդկաստանը դարձել է Արևմուտքի ուշադրության կենտրոնը։ Եվրոպան մղվում է դեպի Հնդկաստան։ Դեպի գանձերի ու համեմունքների երկիրը։

Բայց Եվրոպայից Հնդկաստան տանող ճանապարհին և Կարմիր ծովում ծանր նստել են բարբարոս թուրքերը, բոլորի առջև փակել են ամեն դուռ ու դարբաս։ Դեպի Հնդկաստան այլ ճանապարհներ չկան։ Ատլանտյան օվկիանոսը հանելուկ է. «համատարած և անեզրական ծով», որտեղ չի կարելի նավարկել։

Իսկ մարդկությունն ուզում է իմանալ, թե ինչ կա այդ ծով-օվկիանոսում, նրանից այն կողմ։ Գուցե կարելի է օվկիանոսով ճանապա՞րհ գտնել դեպի Հնդկաստան։ Պետք է փորձել։ Պետք է անպայման փորձել։

Եվ 1492 թվականին, Քրիստափոր Կոլումբոս անունով մի անհայտ մարդ, իսպանական դրոշի տակ դեպի Հնդկաստան նավարկելով. թեքվեց քիչ արևմուտք։ Ու կատարվեց տարօրինակ մի բան. 21 օր հետո՝ հոկտեմբերի 12-ին, Կոլումբոսը «Սանտա Մարիա» նավից տեսավ կապույտ մշուշում թաղված մի ցամաք և ափ իջավ։ Նա կարծում էր, թե հասել է Հնդկաստան...

Այս մի նոր հանելուկ էր՝ Ատլանտյան օվկիանոսի մեծ հանելուկին գումարած։

Սակայն ինձ համար այդ չէ կարևորը։ Հիմա պետք է իմանալ, թե 1492 թվականի երկրորդ կեսին որտե՞ղ էր Մարտիրոս Երզնկացին։

Նորից եմ նայում՝ նրա ձեռագիրը և հուսահատվում եմ վերջնականապես։ 1491 թվականից հետո Մարտիրոս Երզնկացին մոռացել կամ հարկ չի համարել գրել տարեթվերը։ Նա հիշում է միայն, թե որ քաղաքում քանի օր ու շաբաթ է մնացել, երբեմն հիշատակում է ամսաթվերը։

Գումարում եմ այդ օրերն ու շաբաթները և ամսաթվերի հաշիվն եմ անում։ 1492 թվականին Մարտիրոս Երզնկացին անցնում էր Ֆլանդրիայով, «որտեղ,—ինչպես հայտնում է,—լեզուն չգիտեի զրուցելու համար։ Եվ խիստ դժվարությամբ ելա



այնտեղից և բազմաթիվ օրեր հետո հասա Շվեյցարիա»։

Նորից շաբաթներ, ամիսներ են անցնում։ Արդեն 1492 թվականի վերջն է։ Դեկտեմբերի 12-ին նա մտնում է Փարիզ, մնում այնտեղ 13 օր, ապա անցնում է Ֆրանսիայի այս ու այն քաղաքը՝ Նոր Օռլեան, Կաստիլյար, Պուտյե...

Ո՛չ, տարին անցավ։ Քրիստափոր Կոլումբոսն արդեն գնացել, ետ է եկել Ամերիկայից։

Սպասեցե՛ք, իսկ եթե Մարտիրոսը մասնակցել է մի այլ ուղևորությա՞ն, ավել ուշ կազմակերպված։ Բայց դարձյալ իսպանական Կադիս քաղաքից...

Ես նորից եմ անհանգստանում, գտնում, ճշտում, հաշիվներ եմ կատարում։ Վաղուց արդեն 1493 թվականն է։ Մարտիրոս Երզնկացին անցնում է Փորթուգալիայով և, վերջապես, ոտք դնում Իսպանիա. «Սպանական հող»։

Նրա թվարկած իսպանական քաղաքներից առանձնացնում եմ Կադիսը։ Պիտի լինի 1493 թվականի, հավանաբար, աշնան սկիզբը. այո. սեպտեմբերը։ Այս ժամանակ է Մարտիրոսը գրում. «Հաս ամենաօրհնյալ քաղաքն Կադիս, որտեղ մեծ արգանքով պատվեցին ինձ, և մնացի յոթ օր, և գտա մեծ նավ մի, որը, ասացին՝ 80 հազար բեռ տարողություն ունի...»



Բռնվում է շունչս։ Չէ՞ որ հենց այս թվականին, այս ժամանակ նույնպես... Զգուշացնելով, թղթի վրա ես վերակենդանացնում եմ իրադրությունը։

## ԿԱԴԻՍ ՔԱՂԱՔՈՒՄ

Հայտնի աշխարհի՝ Արևմուտքի եզրասահմանն է Կադիս քաղաքը։ Դեմը փռված են համատարած օվկիանոսի կանաչ-կապույտ, փռված ջրերը, որ գնում կորչում են հանելուկ անհայտության մեջ։ Ու թե ետ են նետվում, գալիս են խլացնող շառաչով, ապտակով խփում ծոց նավահանգստում խարիսխ գցած առագաստանավերին, տաշեղ դարձած նավակներին։

Կոշտ ու կլոր գլաքարով պատած փողոցներն այնքան ոլոր են և այնքան խճողված, որ հաճախ է մոլորվում Մարտիրոսը։ Բայց ամեն պատահած մարդու բան չի հարցնում նա. դրանց լեզվին անտեղյակ է։ Իմացածը հայոցն է, որ կադիսեցիք չգիտեն։ Եվ ապա՝ լատինականը։ Եվ նա այդ լեզվով է խոսում՝ քաղաքի քահանաներին պատահելիս։ Այդ մի քանիսն են վարժ գիտակ լատինականին։ Ու սրանց է Մարտիրոսը խոսակից կամ թարգման ընտրում, երբ ուզում է բան հարցնել։ կամ երբ ուզում է իր տեսածից, իր երկար ճամփի լավից ու դժվարից պատմել։ Եվ պատմում է, իսկ քահանաները զարմանում են, ասում.

— Այդքան աշխարհս դու ո՞նց քայլեցիր հետևակ...

Կամաց ժպտում է Մարտիրոսը. սրանց ի՞նչ ասի, թե հայը երկար ու դժվար ճամփի է սովորել։ Եվ պատմում է Մարտիրոսը, ամեն անգամ կաշվե մաղախից հանում, ցույց է տալիս իր ձեռագիր մատյանը, որտեղ տեսածն ու լսածն է գրում օր-օրի։

Յոթ օր Մարտիրոսը պտույտ էր տալիս Կադիս քաղաքի փողոցներում, հրապարակներում, շուկաներում։ Հով քամին էր փչում օվկիանոսից. նա հոգնած ոտքը տանում ծալում էր ծովեզրյա տաք ավազներին, նստած նայում էր ջրերի կանաչ-փրփրած անհագնությանը։ Եվ երբ ուզում էր ելնել, դժվարանում էր։ Հոգնել, մաշվել էր իսպառ։ Մտքինն էր, թե զորությամբ կրկին եկած ճամփան կտրեր, տուն հասներ...

Եվ մի օր, նավերի մեջ մեծ մի նավ տեսավ՝ ծովամեջ խարիսխ գցած։

— Ի՞նչ նավ է,— հարցրեց։

Լատին լեզու իմացող մի քահանա, թե՝

— Այդ նավը ծով-օվկիանոսով ցամաք աշխարհ հասնելու է գնում։ Դեպի Հնդկաստան։ Նորին



բարձրությունն Իզաբելա թագուհու ծովակալի նավն է...

Հնդկաստան հասնի՝ հեշտ է, հայեր շատ են գնում-գալիս։ Հնդկաստանից Հայաստան մի ամսում նրանց հետ կգա, նրանց հետ տուն կհասնի... Եվ սիրտն անհանգստացավ, և բերան բացեց, խնդրեց.

— Ձեր արևն ասեմ, եղբայրներ, նավավար տիրոջը աղաչանք արեք, թող ինձ իր նավն առնի։ Անձիս ուժ չմնաց քայլելու եկած ճամփաս...

Խոսեցին այս քահանաներն իրենց լեզվով, խորհուրդ արին, բարձրացան տեղից։ Եվ նավ ելան Մարտիրոսի հետ։

Հաղթ հասակով, անմուրուք մարդ էր նավի տերը։ Նավի մեծ խցում նստած, շուրջը մի տասնյակ մարդ, ծով ու ցամաքի քարտեզ էր նայում, խոսք էր ասում իշխանավոր ձայնով։

Ներս մտան, կաղիսցի քահանաները բան ասացին իրենց լեզվով, նավի տերը ելավ կանգնեց։ Մեծ աչքերը կկոցել, զարմանքով Մարտիրոսին էր նայում։ Ժպտաց, գլուխն օրորեց։ Հետո մտքի մեջ ընկավ, շատ մտածեց, մտքինը կշռեց.

— Կառնեմ դրան իմ նավս, քանի որ, ինչպես ասացիք՝ հեռու հայոց աշխարհից է եկել և չի կարող ետ դառնալ ցամաքով։ Միայն թե ասացեք դրան, որ գիտենա. ես համատարած ծովով եմ գնալու և վաճառական մարդ չի մտնելու նավս։ Այսքան շատ մարդ որ կան, նավիս ծառայողներն են։ Մենք ձեռք ենք քաշել մեր արևից, ստուծուն ապավինել և, եթե բախտներս բանեց, աշխարհս ենք բոլորելու, այլ ճանապարհ չունենք։ Հիմա ասացեք դրան, թե կամենում է մեզ հետ նավել՝ թող նավի, թե ոչ՝ ինքը գիտի։

Մարտիրոսը չիմացավ ինչպես ուրախությունն արտահայտի գլխով հավանության նշան արավ, խոնարհվեց։

Այսպես Մարտիրոսը մնաց մեծ նավի վրա։

Մեծ նավը և նրան ուղեկից այլ տասնվեց նավ բացառագաստ ելան համատարած ծով-օվկիանոս, լողացին արևմուտք։ Եվ տարան Մարտիրոս Երզնկացուն դեպի «Հնդկաստան», տունդարձի։ 1493 թվականի սեպտեմբերի 25-ն էր, Մարտիրոսի մատյանում գրվածով՝ «մտանք նավն երեքշաբթի...»

Հայտնի չէ, ափսո՜ս, թե Մարտիրոս Երզնկացին ե՞րբ տեսավ կարծեցյալ Հնդկաստանի ափերը, որն այս դեպքում, երևի, եղել է Հաիթի կղզին՝ Էսպանոլը, որտեղ նախորդ տարի Կոլումբոսը հիմնել էր Նավիդադ ամրոցը...

Բայց որտեղի՞ց այս զարմանալի Հնդկաստանում Հայաստան դարձող հայեր գտներ Մարտիրոսը... Չկային նույնիսկ նորաբնակ երեսունինը իսպանացիք. առաջին ուղևորության ժամանակ նրանց Նավիդադ ամրոցում էր թողել Կոլումբոսը։ Հնդիկները, նեղվելով այդ իսպանացիների դաժանություններից, վերջ էին տվել հարստանալու տենչով եկած նրանց բոլորին...

Անհրաժեշտ էր ամեն ինչ տեղեկացնել նորին բարձրություն թագուհուն։

Մինչև այստեղ հասնելն էլ, ճանապարհին հայտնաբերելով Փոքր Անթիլյան կղզիները, ծովակալն



շտապել էր նավ և նամակ ուղարկել Իզաբելա թագուհուն։

Հոգնած ու մաշված, նաև ծովային հիվանդությամբ տառապող, նաև ոչ մի հայ մարդ չգտած, Մարտիրոս Երզնկացին մոլորել էր իսպառ։ Եվ ահա թագուհուն լուր տանող մի այլ նավով նա խելոք համարեց կրկին Իսպանիա վերադառնալ ու, դառնալով, նորից իր ոտքերին ապավինած հետիոտն բռնել տունդարձի իրեն հայտնի ճամփան։

Եվ դարձավ՝ մեծ դժվարությամբ։ Ու այս էր, որ նա գրեց իր մատյանում, թե՝ «67 օրում աշխարհս բոլորեցինք»։

Սրանից հետո գրված է նաև. «Եվ գալով եզրն աշխարհիս, Անդալուզիայի քաղաքներից մեկը, այն քաղաքը, որ ծովամեջ էր, մնացինք այդ քաղաքում 18 օր, որովհետև մեծ ալեկոծության էինք հանդիպել...»

## ՔՐԻՍՏԱՓՈՐ ԿՈԼՈՒՄԲՈՍԻ ՀԵՏ

Մարտիրոս Երզնկացին «աշխարհը բոլորեց» նավարկելով Քրիստափոր Կոլումբոսի հետ։

Այդ միայն այդպես է, քանի որ Քրիստափոր Կոլումբոսն էր և ուրիշ ոչ ոք, որ 1493 թվականի սեպտեմբերի 25-ին, արդեն ոչ թե անհայտ մի մարդ, այլ Իսպանիայի նորին բարձրություն Իզաբելա թագուհու ծովակալը, երկրորդ անգամ շատ մարդկանցով՝ զինվորներով, նավաստիներով, նորաբնակներով, նավարկեց նույն ճանապարհը Հնդկաստան գնալու, և կրկին հասավ այն հեքիաթային կղզիներին ու ցամաքին, որտեղ կապույտ մշուշից ընդառաջ լողացին ցցաշեն ծովամեջ քաղաքներ, կարմրամորթ բարձրահասակ մարդիկ, փարթամ արմավենիներ, թութակներ... Կոլումբոսը հավատում էր, թե իսկապես բոլորել է աշխարհը, քանի որ նրա կարծիքով, որին հավատացին բոլորը, նա հասել է Ճապոնիա (հետո դա եղավ Հաիթին), Չինաստան (հետո՝ ոչ թե մայր ցամաքի մաս, այլ՝ Կուբա կղզին), Հնդկաստան (հետո՝ Ամերիկյան մայր ցամաք)։ Կոլումբոսը հավատացած էր, թե օվկիանոսյան նոր ճանապարհ է հայտնագործել դեպի այդ երկրները՝ աշխարհի մյուս ծայրը գնալու, հասել է «Գանգեսի մոտի կղզիներին...»

Ուրեմն, իսկապես, Քրիստափոր Կոլումբոսի հետ օվկիանոս ելնելով, «աշխարհը բոլորեց» Մարտիրոս Երզնկացին։ Որովհետև, նաև միայն Կոլումբուսը կարող էր ասել նրան, թե՝ «Ես համատարած ծովով եմ գնալու և վաճառական չի մտնելու նավս։ Մենք ծեռք ենք քաշել մեր արևից, աստծուն ապավինել և, եթե բախտներս բանեց, աշխարհս ենք բոլորելու, այլ ճանապարհ չունենք»։

Եվ ապա, այսպես պիտի լիներ, որ Մարտիրոս Երզնկացին կարողանար գրել իր փոքրիկ մատյանում, թե՝ «Մտանք նավն երեքշաբթի և 67 օրում աշխարհս բոլորեցինք...»

Բավական է։ Գուցե արդեն կարելի է դադա՞ր տալ որոնումներին...

Իսկ եթե ստո՞ւմ է այդ Մարտիրոս Երզնկացին, նպատակ ունենալով, թերևս, մասնակից համարվել Նոր Աշխարհի՝ ամերիկյան մայր ցամաքի հայտնագործությանը։

Ոչ, չի ստում Մարտիրոս Երզնկացին։ Օվկիանոսային ուղևորության համառոտ նկարագիրը, ինչպես և ամբողջ ճամփորդությունը, մինչև վերջ, նա գրել է օր-օրին, իր համար։ Այլապես կգրեր ընդարձակ մանրամասներով, հիշելով նաև հանդիպած մարդկանց անունները, անփույթ չէր լինի թվականները հիշատակելիս։ Սա մի փոքրիկ մատյան է, փոքր գիրք ճամփորդության, համառոտ մի գիր, որ պիտի միայն Մարտիրոսին հիշեցներ եղած-կատարվածը։

Իսկ ի՞նչ մի մեծ բան էր այդ եղած-կատարվածը։ Չէ՞ որ ոչ ոք այդ ժամանակ չգիտեր ու երկար դեռ չիմացավ, որ գտնված է մի նոր մայր ցամաք, գտնված է Ամերիկան... ինքը՝ Կոլումբոսը և բոլորը այդ ճամփորդությունը կոչում էին նավարկություն աշխարհի շուրջը՝ համատարած օվկիանոսով Հնդկաստան հասնելու համար։ Մարտիրոսն էլ գրում է՝ «աշխարհս բոլորեցինք»։ Ու այս ճիշտ այնպես, ինչպես, ասում էր Կոլումբոսը և ինչպես անվանում էին նրա հայտնի նավարկությունները։

Հիմա վե՞րջ, հարցնում եմ ինքս ինձ։

Դիտեմ, ես պարտավոր եմ նոր և բոլոր ամենամանր առարկությունները բերել մեջտեղ։ Որոնել և գտնել։ Լավ։

Վերջին փշուր և արդեն նվազ առարկություններն եմ խմբում։ Եվ հոգեմաշ դաժանությամբ հարցնում եմ նորից.

Իսկ եթե Մարտիրոս Երզնկացին «աշխարհի շուրջը» ճամփորդել է մեկ ուրիշի՞ հետ։ Գուցե Ամերիգո Վեսպուչիի հետ։ Ոչ, դա չի կարող լինել։ Ամերիգոյի ուղևորության ժամանակ Մարտիրոսը ո՛չ Իսպանիայում էր և ո՛չ էլ Փորթուգալիայում, այլ տանը՝ Երզնկայում։ Նրա մատյանում գրված է վերադարձին Հռոմ հասնելու օրը՝ 1496, 20-ը փետրվարի։

Հիմա՝ իսկապես վերջ։

Այս է իսկությունը. հայ մի մարդ Մարտիրոս Երզնկացի անունով, այն հեռու-հեռավոր ժամանակներում ոտք է դրել ամերիկյան մայր ցամաքին։ Եվ դա եղել է 1493 թվականին, Քրիստափոր Կոլումբոսի հետ նավարկելիս, նրա երկրորդ՝ սեպտեմբերի 25-ին սկսված նավարկության ժամանակ։

Հիվանդ և տանջահար, Մարտիրոսը վերադարձավ Իսպանիա։ Ետ բերող նավը նորոգվելու կանգնեց, իսկ նա, 18 օր էլ այդտեղ մնալով, կազդուրվելով քիչ թե շատ, բաժանվեց ուղեկիցներից և գնա՜ց, նորից ոտքով շարունակելու իր անհանգիստ ճամփորդությունը։ Հոգնած ոտքերը տարան նրան իսպանական բազմաթիվ քաղաքներով, մինչև բերին հասցրին Սևիլիա, «որտեղ,— գրում է Մարտիրոսը,— խաթունն տեսա...»

## ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹՅՈՒՆ ՍԵՎԻԼԻԱՅՈՒՄ

Այստեղ, Սևիլիայում էր խաթունը՝ իսպանական թագուհի նորին բարձրություն Իզաբելլան։ Երբ նրան լուր տվին, թե մի հայ մարդ, որ ճամփորդել է ծովակալի հետ, տեսություն է խնդրում, թագուհին կարգադրեց ընդունել անհապաղ։

Թագուհին դժգոհ էր իր ծովակալից, որ խոստացել էր ոսկու և թանկագին քարերի բեռներ, հարյուրավոր կարմրամորթ ստրուկներ, բայց ուղարկել էր համարյա ոչինչ, նաև մի երկու նամակ, թե կրկին եղել է Ճապոնիայում, Չինաստանում, Հնդկաստանում, որտեղ հասել է «Գանգեսի մոտի կղզիներին...» Դժոհ էր և չէր ուզում հավատալ, թե ծովակալ Քրիստափոր Կոլումբոսն իրոք հայտնաբերել է Հնդկաստան տանող մի նոր ու կարճ ճանապարհ, հեքիաթային հարուստ կղզիներ ու երկրներ...

— Բերեք հային տեսության,— ասաց թագուհին։

Մարտիրոսը պալատ մտավ շուրջ-բոլորն աչքաբաց նայելով, զարմացած և հիացած, չիմանալով, թե ինչ պիտի խոսի թագուհու հետ։ Իր հեռու-հեռավոր Հայաստան երկրի՞ց ասի, իր հայրենի Երզնկա արհեստաշատ, վաճառաշահ քաղաքի՞ց, որտեղ օդն է ուրիշ, լույսն է ուրիշ և մարդի՛կ այնքան հին են ու սիրելի՝ իրենց խոսք ու լեզվով, իրենց ձեռագիր մատյաններով, քարաշեն ինքնադեմք շինվածքներով... Հարազատ մարդիկ, լուրջ ու դժվար կյանքի սովոր, աշխարհի առջև սրտաբաց և աշխարհն իմանալու անկոտրում հա-



մառութեամբ հարուստ։ Թե՞ պատմի, ասի իր տեսած երկրներից, քաղաքներից, ազգ ու ազգատակից...

Բերին Մարտիրոսին մեծ ու լուսավոր, ոսկով, կերպասով, նկարով զարդարուն մի սրահ, կանգնեցրին բարձր-աթոռին առանձին նստած խաթունի առջև։

Նայում էր թագուհին նույնպես հետաքրքրությամբ։ Վերջին տարիների զարմանալի դեպքերի մեջ ավելի զարմանալի էր թվում, որ այս հին հայը իր հեռավոր տանից ելել, ոտքով աշխարհ թափառելով, այստեղ է հասել։ Որ իր՝ նորին բարձրություն Իզաբելայի ծովակալի հետ նա ելել գնացել, աշխարհ է բոլորել։

Թագուհին դարձավ, հարցրեց.

— Ճի՞շտ է, որ հայը նավ է բարձրացել և ուղեվորվել այդքան հեռու։

Թարգմանեցին լատիներեն։ Մարտիրոսը լատիներեն ասաց, որ ճիշտ է, բացեց իր մատյանը, ցույց տվեց այնտեղ գրվածը, լատիներեն կարդաց՝ «Նավ մտանք երեքշաբթի, և 67 օրում...»

— Ի՞նչ է տեսել այդ հայը, երբ այնտեղ իմ ծովակալի հետ, նրանք ոտք են դրել ցամաք,— հարցրեց թագուհին։

Թարգմանեցին լատին լեզվի։ Եվ Մարտիրոսը պատմեց։

Նա պատմեց, ինչ չէր գրել իր մատյանում, բայց աչքի առջև էր։ Պատմեց հեռվից. ծով-օվկիանոսներից, որ անեզր էր, կիզող էր արեգակը, և շոգ էր, և տապ, և ուրիշ էին աստղերը։ Ահավոր փոթորիկներից ասաց, որ առագաստանավը հանում էին երկինք և նետում անդունդ՝ պատռված ջրերի երախը։ Նաև այն նավավար, նավի տեր մարդուց, որ ահ չուներ և գիշեր ու ցերեկ անահ տանում էր նավը միայն իրեն հայտնի ճամփաներով։ Հետո հիշեց ցամաքը, քաղաք ցցաշեն և ծովամեջ, կարմրամորթ, բարձրահասակ մարդիկ. պտղառատ արմավենիներ. թութակներ... Եվ այն, որ հայ չգտավ՝ հետը տուն դառնալու։ Եվ որ շատ մաշվեց, հիվանդացավ, ուժ էլ չմնաց հայ որոնելու։ Ապա նաև, որ բախտ էր, նավիս տերը մի այլ նավ դարձրեց եկած ճամփով՝ նորից աշխարհիս այս եզրը հասնելու։ Ու նա՝ Մարտիրոսը, ետ եկավ...

— Այսպես աշխարհս բոլորեցի։

Վեր կացավ թագուհին, ծանր մոտեցավ, նայեց Մարտիրոսին մոտիկից։

— Զգիտեմ,—ասաց,—իսկապես ճի՞շտ է այդ ամենը, ինչ ասացիր։

Թարգմանեցին։ Մարտիրոսը խոժոռվեց, վիրավորվեց։ Նորից մաղախից հանեց ձեռագիր մատյանը, ասաց արժանապատվությամբ.

— Մենք՝ հայերս, սրանցից, գիր արված մատյաններից շատ ունենք։ Եվ շատ հին ժամանակներից։ Եվ ամեն մի մատյան, որտեղ հայոց է գիրը, սուրբ է մեզ համար։ Ու այդ է, որ դրանց մեջ մենք միայն ճշտությունն ենք գրում։ Եվ դրան վկա է ամեն ուրիշ ազգ, ում պատմությունը կամ ում կյանքի որևէ դեպք ու դիպված ենք գրի առել մի առիթով։ Ինչպես այս առիթն է։

Հետո Մարտիրոսը խոնարհ գլուխ տվեց, ելավ պալատից։ Եվ գոհ էր, որ տեսավ խաթունին, որ խոսեց և ասաց այն, ինչ չէր էլ մտածել երբևէ ասելու։





ՎԻԼ ՕՐՋՈՆԻԿԻՁԵ

Նկ. ՎԱՁԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մենք հենց առաջին օրը բարեկամացանք: Երբ իրերով բարձած բեռնատարը կանաչ խոտով ծածկված ճանապարհով մոտենում էր մեր ամառանոցին, ես խցիկի պատուհանից անմիջապես տեսա նրան: Նա կանգնել էր բակում և սրբվում էր մեծ, ծոպավոր սրբիչով: Նա բարձրահասակ էր, լայնաթիկունք, մկանուտ: Ես այդ իսկույն նկատեցի: Քանի որ ինքս բավական վտիտ եմ ու միշտ էլ երազել եմ դառնալ ուժեղ, դրա համար էլ ուժեղ մարդկանց միշտ հարգել եմ:

Բեռնատարի վարորդը աշխատում էր դուրս քաշել մի մեծ գերան, որով փակված էր դարպասը: Բայց չնայած որ նա զոռից ամբողջովին կարմրել էր ու անընդհատ հայհոյում էր, գերանը տեղից չէր շարժվում: Հենց այդ ժամանակ էլ բարձրահասակ անծանոթը սրբիչը ճարպկորեն գցելով սռնու ուսին, ուրախ ժպտալով ինչ-որ բան ասաց վարորդին, որից սա էլ սկսեց ժպտալ և, մի ձեռքով ուժեղ հրելով դարպասը, մյուսով գերանը հանեց այնքան թեթև ու հեշտ, որ թվում էր, թե մի փոքրիկ ձող է հանում: Արևի ուրախ կայծերը խաղում էին նրա՝ ուժեղ, շեկ մազերով ծածկված թևերի վրա:

— Այդ դո՞ւ ես ուզում այստեղ ապրել, տղա,— հարցրեց նա ինձ: — Հապա մի նստիր այսպես և մատներդ ուժեղ սեղմիր: Տեսնենք կարո՞ղ ես քեզ պահել օդում:

Եվ երբ ես կռացա ու մատներս պինդ սեղմեցի իրար՝ ծնկներիս տակ, նա վերցրեց ինձ ու մի ձեռքով բարձրացրեց վեր, իր ծիծաղկոտ, երկնագույն աչքերով նայելով ինձ:

Նա մինչ այդ ինձ պատահած մարդկանցից ամենագեղեցիկն ու ամենաուժեղը թվաց: Միակ բանը, որ նրան պակասում էր, դա երևի գլխի մազն էր: Բայց նրա ճաղատությունն էլ այնպես գունատ ու լպստված չէր, ինչպես լինում է թատրոնում նստած մարդկանց մոտ, այլ արևից այրված լինելով, շագանակագույն էր, ինչպես ընկույզի կեղևը:

Այսպես ես ծանոթացա քեռի Միշայի հետ:

Քեռի Միշան պատերազմի ժամանակ սակրավոր էր եղել, իսկ հիմա աշխատում էր շինարարության վրա: Նա ասում էր.

— Առաջ ես կամուրջներ ու տներ էի պայթեցնում, իսկ հիմա կառուցում եմ:

Ինձ դուր էր գալիս նաև այն ասացվածքը, որ նա սիրում էր կրկնել հաճախ.

— Սակրավորը կյանքում մի անգամ է սխալվում:

Դա նշանակում է, որ սակրավորի գործը շատ վտանգավոր է և նա սխալվելու իրավունք բոլորովին չունի: Սակրավորի սխալը նշանակում է մեռնել:

Քեռի Միշան այստեղ՝ ամառանոցում անց էր կացնում իր արձակուրդը:

Նա արթնանում էր վաղ առավոտյան և տրուսիկով վազում էր բակ: Ինձ դուր էր գալիս պատուհանի անկյունից նայել, թե նա ինչպես է ամառանոցի շուրջը, ոնց որ ստադիոնում, գլուխը ետ գցած, թեթև քայլերով վազում և շնչում խորը ու հավասար: Հետո նա սկսում էր մարմնամարզությունը, իսկ ես սենյակում կանգնած, կրկնում էի նրա վարժությունները: Վերջում նա հագնում էր բռնցքամարտիկի իսկական ձեռնոցներ և անտառը լցվում էր ուժեղ թփթփոցով: Սոճուց կախված կաշվե «տանձը» ենթարկվելով նրա կտրուկ հարվածներին, ետ էր թռչում դեպի տախտակն ու առաջ գալիս:

Ես էլ որոշեցի հարվածներս «մշակել» և երկար թելով դռների մեջ կախեցի իմ վոլեյբոլի գնդակը: Բայց գնդակը հարվածից շատ հեռու էր թռչում և ուղիղ ետ չէր դառնում. դրա համար էլ ինձ մոտ ոչինչ չէր ստացվում, Քեռի Միշան մի անգամ տեսավ իմ վարժությունները և ծիծաղելով առաջարկեց իր հետ պարապել:

— Ինչպե՞ս, չէ՞ որ «տանձը» շատ բարձր է կախված,— ասացի ես,— ձեռքերս չեն հասնի:

— Կարելի է «տանձը» ցածրացնել, այն ժամանակ քեզ էլ հարմար կլինի:

Այնուհետև ամեն առավոտ բարակ ձեռքերիս անհագցնելով իր հսկայական ձեռնոցները, նա անընդհատ կրկնում էր.

— Հիմա ելույթ կունենա արնախում մոծակի քաշի բռնցքամարտիկը:

Նախաճաշից հետո քեռի Միշան դուրս էր բերում իր՝ գուղձերի վրա զնգզնգացող հեծանիվը:

Ես նստում էի շրջանակի երկաթե ծողին, ու մենք միասին գնում էինք մեծ լճում լողանալու: Նա ինձ այնտեղ լողալ էր սովորեցնում:

Բայց ամենակարևորը դեռ նոր պիտի լիներ:

Քեռի Միշայի սենյակում որսորդական հրացան կար կախված: Ես առաջ էլ էի զանազան որսորդական հրացաններ տեսել, բայց այդպիսի հրացան առաջին անգամ էի տեսնում: Լավ փայլեցրած ազուստին արծաթյա մի թիթեղիկ էր փակցված, որի վրա գեղեցիկ ու հավասար տառերով գրված էր. «Մ. Պ. Լեբեդևին՝ գերազանց կրակելու համար»:

Այդ հրացանով մենք պիտի որսի գնայինք: Քեռի Միշան ինքն էր ասել ինձ այդ մասին: Նա նույնիսկ պայմանավորվել էր ընկերոջ հետ, որը պիտի գար որսորդական շնով և մենք երեքով պիտի գնայինք իսկական հեռավոր անտառը որսի:

Գուցե և մենք գիշերենք անտառում, խարույկ վառենք ու ածուխների վրա խորովենք մեր խփած որսը և ծխահոտ թեյ խմենք: Եվ, իհարկե, կեսօրին մենք կվերադառնանք մեր ամառանոցը՝ հարուստ ավարով բեռնված և ինձ, որպես որսի լիիրավ մասնակցի, մի նապաստակ կտան, և մայրիկը նրանից ընթրիք կպատրաստի:

Քեռի Միշայի ընկերը շան հետ պիտի գար չորեքշաբթի օրը: Նրա գալու նախօրյակին, առավոտյան, ես նստել էի մահճակալին և այն իրերը, որ, իմ կարծիքով, անհրաժեշտ պիտի լինեին ինձ առաջիկա որսի ժամանակ, դարսել էի առաջս: Այստեղ էր գերմանական քարտեզով զինվորական թղթապանակը, կողմնացույցը, որ գնել էինք ամառանոց գալուց առաջ, գրպանի դանակը, ռետինե բռնակով կացինը և դեղին, թափանցիկ կեղևով պատած հաղորդալարի կապը: Դա ինձ նվիրել էր մի վարպետ, որը մեր հեռախոսն էր վերանորոգում:



Ես մտածում էի այն մասին, թե ինչի մեջ այդ բոլորը դասավորեմ, երբ հանկարծ ուղղակի պատուհանի տակ մի բարձր կրակոց լսեցի:

Ամառանոցի մոտ հրացանը ձեռքին կանգնած էր քեռի Միշան: Օդում վառոդի հաճելի հոտ էր ընկել:

— Ինչի՞ վրա էիք կրակում, քեռի Միշա,— հարցրեցի ես:

Նա ձեռքով ցույց տվեց մեր բակի անկյունը: Այնտեղ, խոտերի վրա ինչ-որ մի բան էր սպիտակին տալիս, ասես ճմռթված թուղթ լիներ:

— Ուզում էի ինձ ստուգել, չէ՞ որ վաղուց հրացան չէի առել ձեռքս: Տեսնում եմ, որ ստացվում է. թռիչքի ժամանակ խփեցի:

Ես վազեցի սպիտակ առարկայի մոտ:

Դա մի դեռևս մատղաշ աղավնի էր: Ես բռնելով թռչնի մաքուր թևից, վեր բարձրացրեցի նրան:

— Ուղիղ գլխի՛ն ես խփել, քեռի՛ Միշա,— գոռացի ես ինչ-որ օտար, խզված ու բեկբեկուն ձայնով և այդ րոպեին զգացի, որ արտասվելու չափ խղճում եմ այդ գեղեցիկ, հեզ թռչնակին:

«Իսկ նրա վրա, երևի, կրակել չէր կարելի... Գուցե աղավնին որևէ շտապ նամակ էր տանում, գուցե փոստային էր», — մտածեցի ես:

Քեռի Միշան հրացանը ձեռքին բարձրացավ իր արտասանդուղքի վրա և դռների արանքում կանգնած շուրջը նայելով, նետեց.

— Երևում է աղավնին տնական էր՝ ձեռնասուն, ուղղակի եկավ ընկավ հրացանիս ծերին...

— Իսկ ի՞նչ անենք սրան, քեռի Միշա:



— Դու էդպես բացեբաց մի՛ քարշ տուր, թե չէ տերը կգտնվի: Ավելի լավ է, փաթաթիր մի բանի մեջ՝ թերթ-մերթ կլինի, ու գցիր մի կողմ: Մենակ՝ ոչ թե աղբակույտի վրա, այլ արտաքնոց...

Ես մեռած աղավնին ձեռքիս՝ ներս վազեցի մեր սենյակն ու սկսեցի թերթ որոնել, որպեսզի մեջը փաթաթեի:

Երբ աղավնին փաթաթում էի պատուհանից պոկած դեղնած ու հին թերթի մեջ, ականջիս ձայներ հասան:

Ինչ-որ տղաներ ցանկապատի մոտ իրար խանգարելով խոսում էին.

— Ա՛յ այստեղ էր, այստեղ էր կրակոցը: Մենք ինքներս լսեցինք ու դեռ ծուխն էլ տեսանք:

Ես ուզում էի կուզեկուզ մոտենալ պատուհանին, որպեսզի տեսնեի, թե ովքեր են եկել, երբ հանկարծ մեր հատակի վրա արյան հետքեր տեսա: Մինչ ես թերթ եմ փնտրելիս եղել, արյունը կաթել է հատակին:

Ես թաշկինակս շտապ հանեցի ու ջրով լի դույլի մեջ թրջելով, սկսեցի հատակից արյունը սրբել:

«Եթե նրանք բակում արյունը տեսնեն, հետքերով կգան այստեղ,— մտածում էի ես:— Ես ի՞նչ պիտի նրանց ասեմ, եթե հանկարծ ներս մտնեն: Ի՞նչ կասեմ նրանց»:

— Ոչ, երեխաներ, դուք սխալվում եք,— հանկարծ լսեցի քեռի Միշայի հանգիստ ու բարեգութ ձայնը:— Դուք չէիք կարող կրակոց լսել Այստեղ ոչ ոք չի կրակել:

«Այստեղ ոչ ոք չի կրակել... Այդ դեպքում որտեղի՞ց է սա»:

Ես հիմա միայն նկատեցի, որ ամբողջ ժամանակ փաթեթը սեղմել եմ կրծքիս:

— Գուցե դուք չեք եղել, այլ մեկ ուրիշը,— բորբոքված գոռում էր մի տղա:

— Ո՛չ, ինձանից բացի այստեղ մի տղա է ապրում, բայց նա հրացան չունի, նա չէր կարող կրակել...

«Բայց նրանք կարող են արյունը տեսնել և անպայման կգան այստեղ»,— նորից մտածեցի ես և, փաթեթը վերնաշապկիս տակ խցկելով, սողացի պատուհանի մոտ, որպեսզի տեսնեմ, թե ինչ է կատարվում այնտեղ:

Երեխաներով շրջապատված՝ բակ մտավ մի երիտասարդ, նիհար կին: Նա բռնել էր մի արցունքոտ աչքերով տղայի ձեռքից:

— Գուցե դուք այնուամենայնիվ տեսե՞լ եք աղավնուն: Երեկ այդ աղավնին նվիրել էին իմ տղային: Նա թռավ ձեր կողմը: Այ, երեխաներն էլ ասում են...

— Դե գիտեք, լսում եք, թե ինչ են ասում ինչ-որ տղաներ...— Քեռի Միշան ձեռքերով տարակուսանքի շարժում արեց:

— Ի՞նչ եք դուք էլ այդտեղ երկար-բարակ խոսում,— ասաց ցանկապատի մյուս կողմում կանգնած մի ակնոցավոր չաղ տղա:— Հարկավոր է դրանց ամբողջ ամառանոցը նայել և վերջ: Կարելի է միլիցիա կանչել: Ես էլ եմ վկա: Ես էլ եմ կրակոց լսել:

— Խնդրեմ — ասաց քեռի Միշան ուրախ,— ներս եկեք, նայեցեք:



Նրանք աղմկելով շարժվեցին պատշգամբի կողմը:

Ես գլուխս կոացրած նստել էի պատուհանի տակ և նայում էի հատակի թարմ ու թաց բծերին:

— Ահա իմ հրացանը,—շարունակում էր քեռի Միշան,—իրոք կախված է, տեսեք, բայց նրանով վաղուց արդեն ոչ ոք չի կրակել: Եվ ի՞նչ եք ասում, ընկերներ, ո՞վ թույլ կտա իրեն կրակել աղավնու վրա:

«Ո՞վ թույլ կտա իրեն կրակել աղավնու վրա: Ո՞վ թույլ կտա... Ո՞վ թույլ կտա»...

Ես գողեգող մոտեցա հետևի պատուհանին, որը նայում էր ետնաբակի կողմը:

Շուրջը ոչ ոք չկար: Մի քանի մետրի վրա կանգնած էր փայտե բուդկան: Հաշվեցի, որ կըհասցնեմ վազել մինչև այդ բուդկան: Բայց դեռ հարկավոր էր ստուգել, թե արտասանդուղքի վրա արյան հետքեր հո չե՞ն մնացել:

Արտասանդուղքին արյուն չկար: Ես կամաց ծածկեցի դուռը և փաթեթը փորիս վրա ուղղելով, զգույշ դուրս եկա պատուհանից:

Շուրջս չնայելով, ես վազեցի թփուտների միջով՝ պոկոտելով տերևները ու մտածելով միայն այն մասին, թե ինչպես հասնեմ այդ բուդկային, որը կարծես իր սովորական տեղից հեռացել էր:

Հետո ես արագ գցեցի դրան կեռը և տախտակների արանքից տեսա, թե ինչպես տղաները դեռ աշխույժ շարունակում են խոսակցությունը:

Սիրտս կատաղի խփում էր, և թվում էր, թե նա ուղղակի հասնում է կոկորդիս: Դողացող մատներով ես դուրս քաշեցի փաթեթը, ուր գըտնըվում էր դեռևս տաք աղավնին, և կլոր անցքից ցած գցեցի:

Բայց ես ոչ մի թեթևություն չզգացի: Ես դանդաղ ծածկեցի ճռռացող դուռը, զարմանալով, որ դեռ կարող եմ ամեն ինչ դանդաղ անել, և նույնքան դանդաղ շուռ տվեցի դրան վրա փակցրած փայտի կտորը, որպեսզի դուռը չբացվի: Դրանից հետո ես անշտապ քայլերով գնացի դեպի ամառանոցը: Եվ երբ ես արդեն մոտենում էի մեր արտասանդուղքին, բոլոր մեր բակում գտնվողները, չգիտես ինչու, դուրս եկան իմ դեմ:

— Ահա և մեր հարևան տղան, որը կարող է ասել այստեղ որևէ մեկը կրակե՞լ է, թե՞ ոչ... — լսեցի ես քեռի Միշայի ձայնը:

Ես աչքերս բարձրացրեցի, նրա դեմքը շատ գունատ ու շաղված էր երևում:

— Ոչ,—ասացի ես:— Այստեղ ձայն-ծպտուն չի եղել:

Սիրտս առաջվա նման թփրտում էր, և ինձ թվաց, որ ես դեռ վերնաշապիկիս տակ զգում եմ մեռած աղավնու դեռևս տաք մարմինը:

— Տղա, քո ձեռքն արյունոտ է, ինչ է, կտրե՞լ ես,—հարցրեց կինը:

— Այո, հորս դանակով կտրել եմ ձեռքս,— ասացի և՝ զգացի, որ այլևս չեմ կարող մնալ այստեղ:

Ես անցա նրանց կողքով և ինձ զսպելով, որպեսզի չվազեմ, գնացի դանդա՛ղ-դանդա՛ղ, զգալով, որ բոլորը նայում են իմ հետևից և ոչ ոք չի հավատում իմ քիչ առաջ արտասանած խոսքերին:

Ես շրջանցեցի տունը և գնացի դեպի բակի խուլ անկյունը, ուր աճում էին վայրի ազնվամորու և մասուրի թփուտները: Նետվեցի այդ թփուտների մեջ և զգացի, թե ինչպես հարյուրավոր փշեր խրվեցին իմ մարմնի մեջ, և սկըսեցի կատաղությամբ պոկել տերևները ու սըրբել նրանցով ձեռքերս: Սուր փշերը ծակում էին մատներս, ու մարմինս վառվում էր այրող ցավից:

Ես պոկում էի տերևները, տրորում ու գցում ցած և լալիս էի նրա համար, որ չեմ կարող գնալ այնտեղ, ուր քեռի Միշան իր հանգիստ կապույտ աչքերով նայում է նրանց:

Թարգմ. Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



# ՈՒՐԲԱԹԱԽՈՍԸ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

«Խելոք է նա, անչափ խելոք», —
Հայկի մասին են միշտ ասում։
Բայց խելոքը նա՞ է արդյոք,
Որ ոչ ոքի հետ չի խոսում։

Ասես մեզնից խռով է նա,
Չի օգնի ոչ մի ընկերոջ։
Նրան իզուր հարցեր մի՛ տա,
Կասի միայն՝ այո կամ ոչ։

Հետը շրջես՝ կձանձրանաս,
Լուռ կքայլի նա ժամերով։
Լավ է ճամփադ մենակ գնաս
Քան այդպիսի մի ընկերով։



Հավաքույթ ենք հենց որ անում,
Չկան նման նստում է մունջ.
Ասես թե ջուր կա բերանում
Կամ թե արձան է մի անշունչ։

Այնքան լուռ է մնում այսպես,
Որ խոսելն է նա մոռանում։
Աքցանով են բառերն ասես
Նրա բերնից մեկ-մեկ հանում։

Ասես ծանր բեռ կա ուսին,
Չի՛ խաղա ու չի՛ ծիծաղի։
Ճանաչեցե՛ք այդ հերոսին,
Ուրբաթախոսն է մեր թաղի։

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

## Ուշ աշուն

Բարակել է վարար առուն,
Էլ բարձրաձայն երգ չի ասում,
Տերևները՝ պես-պես նավակ,
Առանց նավորդ ո՞ւր են վազում։
Փշատենուց հուլունքաձև
Նավակներ են պոկվել, մի տե՛ս,
Եվ սուզվել են ջրի հատակ՝
Փոթորիկ է եղել կարծես...





Առաջին ձյունը
Չոքեց դռանը.
Ցրտից կուչ եկավ
Մրսկան մռանը,
Կորած գուլպան է
Փնտրում տատիկը.
Բայց շատ ամուր է
Գրկել փիսիկը։
Վառարանի տակ,
Ասես երազում,
Տատիկի կիսատ
Գուլպան է հյուսում։



Նկ. ԿԱՐԼԵՆ ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊՈՄՊԵՅԸ





**Սիրելի երեխաներ, հայ ժողովրդի պատմությունն ուսումնասիրելիս, պատմավեպեր ընթերցելիս կամ ուրիշ առիթներով, ձեզ շատ հանդիպած կլինի Անի քաղաքի անունը: Թե ինչպիսին էր միջնադարյան Հայաստանի այդ համբավավոր քաղաքը, երևի ձեզանից ոչ բոլորը գիտեն: Այս գրույցը նվիրված է Անի քաղաքին՝ նրա հիմնադրման 1000-ամյակի առթիվ:**

## ԾԱՂԿՈՒՆ ՔԱՂԱՔԻՑ ՄԻՆՉԵՎ ՓԼԱՏԱԿՆԵՐ

*Նա ոչ Վեզուվի փեշերին է ընկած, ոչ էլ լավայով է ծածկվել, բայց Պոմպեյի ճակատագրին է արժանացել՝ ավերակ է ու անմարդաբնակ: Մեզ շատ մոտ, սակայն մեզ համար անմատչելի. Նրա ավերակներն ընկած են Ախուրյան գետի աջ ափին:*

*Վաղուց է դադարել քաղաք լինելուց շեն ու մարդաշատ Անին, որին վիճակվեց Հայաստանի մայրաքաղաքը լինել նրա պատմության երկու կարևորագույն փուլերում՝ Բագրատունյաց թագավորության (10—11-րդ դ.դ.) և Զաքարյանների (12-րդ դարի վերջ, 13-րդ դարի առաջին քառորդ) ժամանակ:*

*Հիմնադրվելով սրանից հազար տարի առաջ (նրա առաջին, այսպես կոչված Աշոտյան քաղաքապարիսպների շինարարությունն ավարտվեց 964 թվականին), նախկինում Կամսարական իշխանների ամրոցը հանդիսացող Անին, Բագրատունյաց թագավորության շուրջ մեկ դար տևող խաղաղ ժամանակաշրջանում բարգավաճեց ու զարգացավ որպես ամրացված քաղաք, վարչական, առևտրական ու արհեստային արտադրության կենտրոն: Այս շրջանումն էլ Բագրատունիների հմուտ քա-*



Հյուսիսային ամրությունները Ավագ դռան մոտ

Տրդատ թագավորի շքերթը (որմնանկար)

Գագկաշեն Ս. Գրիգոր եկեղեցու ավերակները

ղաքաշինարարները, դրանց թվում նաև մեծատաղանդ Տրդատ ճարտարապետը, Անին կառուցապատեցին եկեղեցական ու աշխարհիկ հոյակապ շենքերով, իսկ նույն դարի վերջում ստեղծելով քաղաքապարիսպների երկրորդ գիծը՝ Սմբատյան պարիսպները, անհամեմատ ընդարձակեցին ամրացված քաղաքի հողատարածությունը։

11-րդ դարի կեսին, երբ Բյուզանդական կայսրության ոտնձգությունների շնորհիվ Բագրատունիների թագավորությունը դադարեց գոյություն ունենալուց, երկու անգամ քաղաքը պաշարվեց, սակայն իր հերոսական պաշտպանների ու անառիկ ամրությունների շնորհիվ անհասանելի եղավ օտարերկրյա զավթիչների համար, որոնք նրա պարիսպների տակ և շրջակա կիրճերում մեծ ջարդ ստանալով՝ ստիպված եղան հրաժարվել Անին գրավելու մտադրությունից։

Շուտով Հայաստանն ու նրա մայրաքաղաքը ենթարկվեցին նոր արհավիրքների՝ սելջուկների ներխուժմանը, որոնք 1064 թվականին գրավելով Անին, մեծ ավերումներ պատճառելուց հետո, այն վաճառեցին քրդական Շեդդադյան տոհմի ներկայացուցիչներին։ Ապա Անին սկսում է ձեռքից-ձեռք անցնել։ Եվ միայն 12-րդ դարի վերջին, երբ հայ-վրացական միացյալ բանակները Անդրկովկասը մաքրում էին օտարերկրյա զավթիչներից, քաղաքին տիրում են Զաքարյանները։ Հետագա 4—5 համեմատաբար խաղաղ տասնամյակների ընթացքում քաղաքն ապրում է իր նոր, ավելի նշանակալից ծաղկումը։ Մարդաշատ ու բազմազգ բնակչությամբ, վարչական, առևտրական ու արհեստային արտադրությունների իր նշանակությամբ և, իհարկե, գեղեցկաշեն կառուցվածքներով, Անին դառնում է Անդրկովկասի ու Մերձավոր Արևելքի ամենահանրահայտ ու նշանավոր քաղաքներից մեկը։



Ս. Փրկիչ եկեղեցին

Միջնադարյան այս քաղաքի վերելքը նորից ու վերջնականապես կասեցվում է մոնղոլների ներխուժմամբ, որոնք դաժանորեն կոտորում են բնակիչներին ու ավերում Անին։ Պակասը լրացնում է 1319 թ. երկրաշարժը, երբ վնասվում են քաղաքի շատ շենքեր, խորտակվում է մայր տաճարի գմբեթը։ 14-րդ դարի երկրորդ կեսից սկսված քաղաքի անկումը շարունակվում է նաև 15-րդ դարում։ Անին աստիճանաբար լքվում է իր բնակիչների կողմից, որոնք արտագաղթում են Հայաստանի տարբեր մասերը, երկրից դուրս՝ Սև ծովի հյուսիսային ափերը, Ռումինիա և Լեհաստան, հիմնելով հայկական գաղթավայրեր։ Երբեմնի ծաղկուն այս քաղաքը հետզհետե ավերակների է վերածվում։ Հետագա դարերում այստեղ բնակություն են հաստատում զանազան քոչվոր ցեղեր։

## ԵՐԲ ՍԿՍԵՑԻՆ ԳՈՐԾԵԼ ՀՆԱԳԵՏՆԵՐԻ ԲՐԻՉՆԵՐԸ

Ավերակ քաղաքն իր հոյակապ հուշարձաններով հրապուրում էր, կանչում, մեռյալ վիճակում էլ նա կարծես խոսում էր ու պատմում իր փառավոր անցյալի մասին... Երբ 1877 թ. Կարսի նահանգը անջատվեց Թուրքիայից ու միացվեց Ռուսաստանին, Անին դարձավ մատչելի տեսարժան վայր հայրենական ու օտարերկրյա շատ ճանապարհորդների և գիտնականների, շրջակա գյուղերի և Անդրկովկասի քաղաքների բնակչության համար։ Այցելուները հիացմունքով էին խոսում և գրում անխնամ թողնված տաճարների, պալատների, պարիսպների ու այլ կառուցվածքների մասին։ Շատերը հարց էին հարուցում՝ հնագիտական ուսումնասիրություններ սկսել այստեղ։ Ու մի օր էլ դրանք սկսվեցին։ 1892 թվականին, այն ժամանակ դեռևս երիտասարդ ու սկսնակ հայագետ Նիկողայոս Մառը ձեռնարկեց Անիի ավերակների պեղումները։ Հաջորդ դարի սկզբից դրանք սիստեմատիկ բնույթ կրեցին ու շարունակվեցին մինչև 1916 թվականը։ Մառի հնագիտական արշավախումբը, որի մեջ էին մտնում Հովսեփ Օրբելին, Թորոս Թորամանյանը, Նիկողայոս Բունիաթյանը և ուրիշ շատ գիտնականներ, տարիների ընթացքում բեղմնավոր աշխատանք կատարեց Անիում, հայտնաբերելով գիտական շատ արժեքավոր նյութեր։



Կուսանաց վանքի եկեղեցին

## ԱՆԻԻ ԱՎԵՐԱԿՆԵՐԻ ՄԵՋ

*Եթե ձեզ հետ միասին կանգնենք Ախուրյան գետի բարձրադիր ձախ ափին, ապա այնտեղից դեպի հյուսիս նայելիս, մեր առջև կբացվի Անիի հոյակապ համայնապատկերը՝ կիսակործան ու կանգուն բազմազան շենքերով ու կառուցվածքներով։ Եռանկյունաձև այն ընդարձակ հրվանդանը, որի վրա դարեր առաջ տարածված էր քաղաքը, հարավ-արևելյան կողմից՝ Ծաղկոցաձորի լայն հովտով։ Հիշյալ երկու ձորերը և նրանցով հոսող Ախուրյան գետն ու Անի գետակը իրար են միանում հրվանդանի հարավային ծայրի մոտ։ Հյուսիսային կողմից, որտեղ Գայլիձորն ու Իգլիձորը միմյանց բավականաչափ մոտենում են, եռանկյունաձև հրվանդանը հարում է ընդարձակ սարահարթին։ Տեղանքի այսպիսի ընտրությունը, որը բնորոշ է մեր լեռնային երկրի նաև ուրիշ քաղաքների (Կարս, Լոռե, Խլաթ և այլն) ու ամրոցների (Ամբերդ, Բջնի) համար, թելադրված էր պաշտպանական նկատառումներով։ Բնական ու արհեստական խոչընդոտները միասին պիտի ապահովեին քաղաքի ու ամրոցի անառիկությունը։ Այդ հատկանիշների տեսակետից Անին լավագույնն էր միջնադարյան Հայաստանի քաղաքներից։*

*Եռանկյունաձև հրվանդանի վրա տեղավորված էին քաղաքի երկու հիմնական մասերը, միջնաբերդը՝ թառած մի բարձրադիր ծերպի վրա քաղաքի հարավ-արևմտյան կողմում, և բուն քաղաքը՝ շահաստանը, որտեղ կենտրոնացած էր Անիի ողջ գործարար կյանքը։ Աշխատավորության բնակեցված արվարձանները ամրացված քաղաքից դուրս էին գտնվում, նրանք տարածված էին շրջակա ձորերում ու սարահարթի վրա։ Վտանգի դեպքում նրանց բնակիչները ապաստան էին գտնում ամրացված քաղաքում։ Եթե միջնաբերդն ու շահաստանը կառուցապատված էին շքեղ պալատներով ու տաճարներով, ապա արվարձանները առատ էին որպես բնակարան ծառայող հետնախորշերով։*

*Մեր աչքի առաջ բազմաթիվ ավերակների հետ միասին երևում են պարիսպներ, պարիսպներ... Անիի հմուտ քաղաքաշինարարները խելացիորեն զուգակցելով դրանք բնական պայմանների հետ, կարողացել են անառիկ դարձնել քաղաքը։*

*Մեծ հետաքրքրություն են ներկայացնում Սմբատյան քաղաքապարիսպները։ Սրանք բաղկացած էին հետևի՝ ավելի բարձր նախապարիսպներից ու առջևի՝ ցածր կրկնապարիսպներից։ Նրանցում բացվում էին մի քանի կրկնակի դարպասներ (Կարուց, Դվնո, Ավագ և այլ դռներ)։ Նախապարիսպների բազմաթիվ բուրգերում կային սանդուղքներ, որոնք տանում էին դեպի դիտանոցներն ու պահակատները։ Կրկնակի դարպասների միջև գոյություն ունեցող ոչ մեծ տարածությունները, շրջապատված բարձր պարիսպներով, խիստ դժվարացնում են գրոհը հետին դարպասի վրա, եթե թշնամուն հաջողվի խորտակել առաջինը։ Սմբատյան պարիսպների առաջ, նրանց համարյա ամբողջ երկարությամբ ստեղծված էր ջրով լցված փոս, որի վրա ձգված էին, անհրաժեշտության դեպքում, բարձրացվող կամուրջներ։ Գաղտնի ջրանցքով լցվող ու աստիճանաձև (տեղի թեքության պատճառով) այս փոսերն ունեին ոչ միայն պաշտպանական նշանակություն։ Նրանց ջրերը օգտագործվում էին Գայլիձորում և Իգլիձորում եղած ջրաղացների, արհեստանոցների (կաշվի, ներկարարական), այգիների ոռոգման և այլ կարիքների համար։*

*Անին ներկայացնում էր շինանյութով, գույնով ու ճարտարապետության բարձր մակարդակով միմյանց հետ ներդաշնակ տարբեր բնույթի շենքերի ու կառուցվածքների մի իսկական թանգարան։ Քաղաքի ինքնատիպ ճարտարապետական ոճը կազմավորվել էր քաղաքային կյանքի ու աշխարհիկ մտածողության պահանջմունքներին համապատասխան։ Միջնաբերդին թառած Բագրատունի թագավորի պալատը, շահաստանում գտնվող Պարոնի, Սարգսի ու այլ պալատները, հյուրատները իրենց գեղեցիկ շքամուտքերով, վաճառատները, կրպակները, բաղնիքները, տարբեր մակարդակի բնակարանները և այլ կարգի շենքեր, հարուստ պատկերացում են տալիս միջնադարյան Հայաստանի աշխարհիկ ճարտարապետության վերաբերյալ։*

Մեր պատմիչները Անին կոչել են հազար ու մեկ (այսինքն՝ շատ) եկեղեցիների քաղաք։ Դրանցից առանձնապես հիշատակության արժանի են Տրդատ ճարտարապետի կառուցած Մայր տաճարն ու Գագկաշեն եկեղեցին, Փրկչի, Աբուղամրենց, Առաքելոց, Հովվի ու միջնաբերդի, ինչպես նաև 13-րդ դարում կառուցված Տիգրան Հոնենցի և Կուսանաց վանքի եկեղեցիները։

Պակաս հետաքրքրություն չեն ներկայացնում Անիի բնակչության կոմունալ սպասարկման մակարդակը բնութագրող նյութերը։ Քաղաքն ապահովված էր խմելու ջրով։ Միջնաբերդում ջրի մշտական պաշար ստեղծելու համար կային ավազաններ։ Բացի այդ, պաշարման դեպքում ջրի ու մթերքների պաշարները լրացնելու և արտաքին աշխարհի հետ կապ պահպանելու համար՝ միջնաբերդն ուներ ստորերկրյա գաղտնուղի։

Փողոցներն ու հրապարակները, ինչպես և քաղաք մտնող ճանապարհները սալարկված էին քարով կամ տափանված խճով։ Փողոցներն ունեին մայթեր ու անցումներ։ Անցուդարձ անող սայլերից տների անկյունները պաշտպանվում էին քարե սյունիկների միջոցով։ Տների մուտքերի մոտ դրված էին քարե նստարաններ։ Փողոցների թեքությունների պատճառով, երբեմն մի փողոցից մյուսն անցնում էին քարե սանդուղքների միջոցով։ Բուն քաղաքը ձորերում սփռված արվարձանների հետ կապելու, ինչպես և արտաքին ճանապարհների համար Ախուրյան գետի և Անի գետակի վրա կառուցված էին մի քանի կամուրջներ։ Դրանցից ամենակարևորը գտնվում էր Ախուրյանի կիրճում։ Եռաչքանի այդ կամուրջը (կենտրոնում 30 մետրանոց կամարային բացվածքով) կառուցված էր այնպես, որ անհրաժեշտության դեպքում նրա փայտաշեն երթևեկային մասը կարող էր ետ քաշվել, և կամուրջը անանցանելի կդառնար թշնամիների համար։ Անիի տակ, ժայռերի մեջ, բացի բնակարաններից, փորված էին բազմաթիվ շտեմարաններ, դամբարաններ, եկեղեցիներ, նույնիսկ փարախներ, անասնագոմեր ու աղավնատներ։ Ստորերկրյա Անին մի առանձին աշխարհ էր, որը սակայն անհրաժեշտ չափով չի ուսումնասիրվել։

Ահա, սիրելի երեխաներ, այսպիսին էր իր հազարամյակը բոլորած Անին. նախկինում շեն ու աղմկալից, հանճարեղ ճարտարապետների ու քարագործ վարպետների օրրանը, որ հիմա ավերակ ու լքված, չի դադարում մնալ հայ ժողովրդի քաղաքաշինական ու ճարտարապետական մշակույթի անբաժանելի մասը, նրա բազմադարյան պատմության անմոռաց էջերից մեկը։

ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայկ. ՍՍՌ արվեստի վաստակավոր գործիչ







Գագիկ Ա. Բագրատունի թագավորի արձանը

Մայր տաճար։ Հեռվում՝ միջնաբերդը։

Գագկաշեն Ս. Գրիգոր եկեղեցու ավերակները

## ՉԵՄ ԳՆԱ

(Կատակային)

Չէ՛, չեմ գնա Երևանից,
Այս բոլորը ո՞վ կտա ինձ.
Էն սառը, թարմ լիմոնադը,
Կողքին դրած մարմելադը,
Էն աքլորի, սկյուռիկի
Փայլուն տուփով շոկոլադը,
Էն գույնզգույն քաղցր ջուրը,
Որ խմում է էն պուճուրը,
Տեսակ-տեսակ պաղպաղակը՝
Էն էսկիմոն, էն բաժակը,
Տանձ ու խնձոր շարան-շարան.
Բաց է մնում մարդու բերան...
Չէ՛, չեմ գնա Երևանից.
Այս բոլորը ո՞վ կտա ինձ:

## ԱՐԱԳԻԼ

Բարձր ու բարակ բարդին այսօր
Մի նոր հյուր է ընդունել,
Նրա ճյուղին հյուսված մի բույն
Կենդանություն է առել:

Ո՞վ է արդյոք այս օրերին
Անցել անտակ օվկիանները,
Ճեղքել մրրիկ ու փոթորիկ,
Տեսել ձյունոտ գագաթներ:

Իրեն ճամփին հաղթահարել
Հազար ու մի փորձանքներ,
Թռել եկել ու համարձակ
Բարդու ճյուղին է կանգնել:

Իր հովանի բարդու ձեռքը
Նա գիշերն էր համբուրել.
Ձմռան դաժան ցրտերն էին
Այս երկուսին բաժանել:

Արագիլը սակայն երդվեց
Չմոռանալ վես բարդուն.
Ուր էլ լինի, ինչ էլ լինի,
Մարտի իններին կգա տուն:

Ու խոստումը կատարում է
Նա ամենայն սրբությամբ,
Երանի թե ես էլ այդպես
Նմանվեի հենց նրան:



Ժպտուն դեմքով այս աղջիկը ՆԵԼԼԻ ՇԱՌՈՅԱՆՆ է: Նա սովորում է Երևանի № 56 դպրոցի 4-րդ դասարանում: Նելլին կարգապահ և լավ սովորող է: Նա նաև ոտանավորներ է գրում: Տպագրում ենք նրա ստեղծագործություններից մի քանիսը:

## ԳԱՐՈՒՆ

Արի, գարուն, արի,
Գարնան հովեր բեր,
Կարմիր արևի
Պայծառ շողեր բեր:

Թող ամպ որոտա,
Փայլակը շողա,
Թափվի հորդ անձրև,
Ձյան սիրտը դողա:

Արի, գարուն, արի,
Նախշուն հավքեր բեր,
Գույն-գույն ծաղիկներ,
Կարմիր վարդեր բեր:

Կանաչ գորգեր փռիր
Սարին ու ձորին,
Թող թփեր տա, ծաղկի
Իմ խնձորենին:

Թող ժրաջան մեղուն
Իր քնից զարթնի
Ու անուշ տզզոցով
Մեր այգին լցնի:

Արի, գարուն, արի,
Հերիք մնանք փակ,
Տնից դաշտ վազենք,
Փնջենք մանուշակ:

# ՄԵՐ ԿԱՏՈՒՆ

Մենք ունեինք մի կատու,
Աչքերը՝ ջինջ, լուսատու,
Տեսքով՝ իսկը վագրի ձագ,
Բայց խոզի պես՝ աչքածակ։

Տրտնջում էր մայրս միշտ.
— Սա փիսիկ չէ, այլ՝ պատիժ.
Տանից բան է գողանում,
Աման-չաման է բանում։
Ի՞նչ կլինի, Նելլի ջան,
Տար կորցրու դու սրան...

Լսել էի, որ կատուն
Ուր էլ տանես՝ կգա տուն.
Պիտի աչքերը կապես
Կամ էլ պարկի մեջ փակես,
Որ գնացած իր ճամփով
Ետ չդառնա ապահով։

Ես այդպես էլ արի հենց.
Կատվին դրի պարկի մեջ,
Պարկը ձեռքիս պինդ բռնած՝
Ջորալանջով իջա ցած,
Ասի՝ տեղն է իսկական.
Գցեմ առուն ու ետ գամ։

Հենց որ հասա ափն առվի,
Պարկը իսկույն ջուրը տվի,
Բայց ի՜նչ, փիսոն օձի պես
Կծիկ դառած՝ դուրս նետվեց,
Ուղիղ երեսիս թռավ,
Փշտացրեց ու փախավ։
Ծփրթվեցի և հանկարծ
Առվի ափից՝ ո՜ւ՜յդա՜ ցած։

— Վա՜խ, մամա՜ ջան, — կանչեցի, —
Վա՜խ, շորերս թրջեցի... —
Աղմկում եմ, վա՜յ տալիս,
Մերթ ծիծաղում, մերթ լալիս...

Այսպես, թրջված եկա տուն
Եվ ի՞նչ տեսնեմ՝ մեր կատուն
Ինձնից շուտ է տուն հասել,
Դռան շեմքին պպզել։
Ինձ որ տեսավ, զայրացավ,
Մեջքն ուռցրեց ու ասավ.
— Քեզնից շո՛ւտ տուն եկա ես.
Վատությունդ մնաց քեզ...



Պատանի ընթերցող, ուշադրությամբ նայիր այս լուսանկարին։ Իհարկե, ոչ մի արտասովոր բան չկա այստեղ։ «Սովորական երգչախումբ է, որից մեր բոլոր դպրոցներում էլ կան»,—հավանաբար կասես դու։ Բայց ո՛չ, մի՛ շտապիր եզրակացություն անել։

Այս հայ պատանիներին ու աղջիկներին դու չես տեսնի Հայաստանի և ոչ մի դպրոցում։ Նրանք ծնվել են օտար երկնքի տակ ու չեն տեսել ո՛չ հայրենի խրոխտ լեռները, ո՛չ տուֆակերտ Երևանը, ո՛չ էլ նրա կապուտակ երկինքը։ Սակայն հայրենիքից հեռու, մայր Հայաստանի գովքն են անում շարունակ։ Եվ ահա երգում են նրանք։ Հայրենի հողից զրկված, նրա անշեջ կարոտը սրտներում անթեղած քո հեռավոր հայրենակիցները։

Ուշադիր նայիր ու կարդա նրանց հայացքները։ Մեկն իր երազուն աչքերը հառել է մի կետի, երգում է ու իրեն զգում իր սիրելի հայրենիքում, ասես տեսնում է Արարատի ու Արագածի ձյունեղեն գագաթները, շրջում Երևանի պողոտաներով, խմում նրա հարազատ ու սառնորակ ջուրը։ Բայց աննուն կարոտ ու թախիծ կա նրա աչքերում։ Իսկ մյուսը նայում է դահլիճում նստած հայ ծերունուն ու նրա աչքերի մեջ կարդում աստանդական հայերի տառապանքը։

Այս լուսանկարը մենք ստացել ենք հեռավոր Հալեպ քաղաքից։ Այն ուղարկել է մեր ամսագրի «Ովքեր են մեր լավագույն ընթերցողները» մրցանակաբաշխության առաջին կարգի մրցանակակիր Սոնա Պարոնյանը։ Ահա նա, ծանոթացեք. ակորդեոն է նվագում (ծայրում նստածը)։

Սոնան մեզ ուղարկել է նաև իրենց դպրոցի ամենամյա տարեգիրքը, որը կրում է «Բարձունք» խորագիրը։ Տպագիր այդ ժողովածուն շատ ու շատ տեղեկություններ է հաղորդում սփյուռքահայ երեխաների ուսման ու երազանքների մասին։

Սիրիայում բազմաթիվ հայեր են ապրում, միայն Հալեպ քաղաքում կա մոտ 65 հազար հայ: Այստեղ գործում են մի շարք հայկական դպրոցներ: Լազար Նաճարյան—Գալուստ Գյուլպենկյան երկրորդական վարժարանը այն չորս լրիվ միջնակարգ դպրոցներից մեկն է, ուր սովորում է Սոնա Պարոնյանը: 1964 թվականը հոբելյանական տարի էր այս դպրոցի համար: Հոբելյանական էր ոչ միայն նրա համար, որ լրացավ դպրոցի հիմնադրման տասը տարին, այլ նաև նրա համար, որ եթե 1954 թվականին դպրոցն ուներ 83 աշակերտ, ապա այժմ՝ 1000: Դպրոցն ունի թատերախումբ, երգչախումբ, գրական, երաժըշտական, սպորտային և այլ խմբակներ:

«Բարձունք» տարեգրքի հոբելյանական համարից արտատպում ենք աշակերտների ստեղծագործություններից մի քանիսը:




# Ա՜Խ, ԵՐԱԶ ԷՐ...

*Մնաք բարով, մայրիկ...*

*Թաշկինակը ձեռքս, օդին մեջ վերջին հրաժեշտի բարևը կտայի, երբ զորավոր ցավ մը ցնցեց ամբողջ մարմինս: Բացի աչքերս և առաջին վայրկյանին չկրցա բնորոշել ուր գտնվիլս, բայց երկվայրկյան մը վերջ, իրականությունն իր ամբողջ ուժգնությամբ եկավ լուսավորելու թմրած ուղեղս: Ձեռքս շարժած պահուն տանիքի բազրիքին զարկած էի ու արթնցած անոր պատճառած ցավեն: Կգտնվեի դրախտային հայրենիքիս մեջ, անմիջապես աչքերս գոցեցի, վերադարձնելու համար այդ տեսիլքը, բայց ափսո՜ս, գացած էր անվերադարձ, հիշողությանս մեջ ձգելով միայն հետք մը աղոտ, պարզապես ծիծաղէլու համար վրաս:*

*Քունը հավետ փախած էր աչքերես, և գիշերվան այդ վսեմ լռության մեջ միայն կրցա գտնել անմխիթար հոգուս գոհացումը: Լուսինը գլխուս վերև կեցած՝ կժպտար: Ինծի այնպես էր թվում, թե կծիծաղեր վրաս, կծիծաղեր անճարակությանս համար: Այդ վայրկյանին ընկեր մը, մտերիմ մը կփնտրեի խոսելու, բացատրելու և պատմելու երազներս, հույսերս: Աչքերս գոցեցի ու, երբ բացի, կրկին հանդիպեցի Լուսնին, որը մեղմորեն ժպտում էր: Գտա, գտա փնտրածս... Տես, ինչ անմեղ ու բարի է Լուսինը: Ով երկնային անմահ մարմին, այս գիշերվա խաղաղության մեջ բարի եղիր բաժանելու թախծոտ հոգուս կսկիծները. մտիկ արա, պատմեմ քեզ:*

*— Օր մը, երբ դեռ փոքր էի, ինծի ասին, դուն հայ ես: Նախ շատ տարօրինակ թվաց ինծի հայ լինելս, որովհետև ես իմ անունս ունեի, բայց ժամանակ մը ետք, սիրեցի այդ անունն ալ, այնքան սիրեցի, որ երբ հարցնեին անունս, նախ «հայ» կսեի: Կամաց-կամաց ականջս լցվեց «Հայաստան, երկիր դրախտավայր» — ով: Որքան կմեծանայի, այնքան հոգուս մեջ տեղ կգրավեր այդ անձման դրախտը, իր Արարատով, Արագածով, չքնաղ Սևանով ու Էջմիածնով:*

*Մի օր, երբ ինծի հարցրին. «Ո՞ւր կուզես երթալ», գիտես, ով անմեղ Լուսին, ըսի՝ «Հայաստան, երկիր դրախտավայր»: Ա՜խ, վրաս խնդացին: Մանուկ հոգուս ամբողջ վրեժխնդրությամբ անիծեցի նրանց, ծրովհետև փորձում էին դրախտս պղծել, անիմաստ ու անտեղի խնդուքներով: Այդ օրեն վերջ շատ գիշերներ երազեցի իմ հայրենիքը:*

*Այս գիշեր, սիրելի Լուսին, երբ վերջապես տարիների երազս պիտի իրագործվեր, հանկարծ արթնցա: Ա՜խ, ինչ անբախտ եմ...*

*Երազիս մեջ ապրեցի բաժանման պահը մորիցս, ու այդ պահը հոգիս լցրեց պանդխտության դառնությամբ:*

*Ի՞նչ կլինեեր, բարի Լուսին, գեթ մի ժամ ապրեի հայրենի հողի վրա:*

*Երազս մնաց երազ, իսկ հոգիս՝ անմխիթար:*

**ՌԻՏԱ ՍՅՈՒԼԱՃՅԱՆ**

## ՄԱՅՐԻԿԻՍ

Ա՜խ, որքա՜ն, որքան կցանկամ ըլլալ
Աստղ լուսատու երկնի խորհուրդին,
Ու մութ գիշերին շողերով պայծառ
Լույս տալ քեզ անվերջ, իմ մայր, իմ անգին։

Ա՜խ, որքա՜ն, որքան կտենչում ըլլալ
Աղբյուր մը վճիտ կամ զեփյուռ մ՛անուշ
Ու անվերջ հոսիլ և զով ու հով տալ,
Քու սիրույդ համար, օ՜հ, մայր իմ անուշ։

Ա՜խ, որքա՜ն, որքան կցանկամ ըլլալ
Ճկուն ու դալար մորճ մը քեզ նեցուկ,
Ճյուղ մը մշկենի և կամ հասուն բար,
Քու կյանքիդ համար երազով խորունկ։

Ա՜խ, եթե գիտնաս, մայր իմ, մայր անուշ,
Թե որքան կըղձամ ըլլալ քեզ համար,
Քեզ համար միայն երազ մը քնքուշ,
Օրերուդ համար ու կյանքիդ պայծառ։

*ՎԻԳԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

## ԽԱՂԱՂ ԵՐԵԿՈՆ

Մթություն մը փայփայող կիջնե տակավ ամեն կողմ,
Ու կլռեն դաշտերի երգն ու աղոթքը վերջին,
Իրիկվա մեջ այս խորունկ, խաղաղավետ ու անդորր,
Ուր աչուկներն երկնքին թեթև, քնքուշ կժպտին։

Երկինքն ահա զերդ խորան. խաղաղություն կշնչե,
Ու թռչունները շաղակրատ ալ կմտնեն խորունկ քուն։
Երանավետ քաղցրությամբ բնությունն ալ կննջե,
Իր կոպերուն ծանրացող կիջնի երազ մը անհուն։

Եվ արդ ահա մեղմորեն գիշերվա մեջ ամեն դի
Մեղմ ու քնքուշ մատներով զեփյուռը քուն կսրսկե
Դարձած պարիկ մը բարի՝ ոգին աղվոր երազի։

Երազն ըլլար իրական, ըլլար կյանքն ալ անվախճան՝
Գիշերին պես աստղածոր ու անոր պես զովարար.
Աստղերուն պես մշտավառ, աղոթքի պես սրբազան։

*ՎԵՐԺԻՆ ՔՅՈՒՓԵԼՅԱՆ*

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ՆԿԱՐԱՀԱՆՈՒՄ ՄՈՒԼՏԻՊԼԻԿԱՑԻՈՆ ԿԻՆՈՆԿԱՐՆԵՐԸ



Բոլորիս հայտնի է, որ սովորական կինոնկարներում հանդես եկող դերակատարները՝ մարդիկ, ինչպես նաև կենդանիները, մեքենաները, գործողության միջավայրը (բնակարան, ծովափ, ջրվեժ) և մեզ հանրածանոթ շատ առարկաներ ներկայանում են իրենց բնական տեսքով Մինչդեռ մուլտիպլիկացիոն ֆիլմերում այս բոլորը պատկերվում է նկարների կամ տիկնիկների օգնությամբ։



Նկարներով մուլտ նկար ընտեղծելու ժամանակ նկարիչը, ելնելով նկարի բովանդակությունից, նկարում է գործողության միջավայրը, գործող անձանց և առարկաները։ Ասենք, պահանջվում է պատկերել անտառով փախչող նապաստակին և նրան հետապնդող որսորդին։

Նկարիչը պլաստմասսայի թափանցիկ թղթի վրա նկարում է գործողության տեղը՝ անտառ, թփուտներ, երկինք, ամպեր և այլն։ Ապա նկարում է նապաստակին ու որսորդին՝ շարժման սկզբնական պահին։ Երկրորդ թղթի վրա նկարվում է նույն անտառի տեսարանը։ Իսկ նապաստակն ու որսորդը պատկերվում են այլ դիրքով. նապաստակի ոտքը մի քիչ բարձրացած է, պոչը ծռած է, ականջը՝ քիչ ետ դարձած։ Շարժման դիրքը փոխված է նաև որսորդի նկարում։



Այսպես շարունակ առանձին թղթի վրա նկարվում է յուրաքանչյուր պատկերի ու գործողության մի ակնթարթ։ Առաջին՝ հայացքից նկարների շարժման դիրքափոխումը աննկատ է. որպեսզի որսորդն ու նապաստակը անեն 2—3 քայլ,





անհրաժեշտ է նկարել 40—50 շարժման հաջորդական պահեր։ Յուրաքանչյուր տեսարանի նկարահանման համար պատրաստվում է հազարավոր գունավոր նկարներ, եթե կինոնկարը գունավոր է։ Երբ արդեն պատրաստ են նկարները, պահպանելով շարժման պահերի հաջորդականությունը, որի համար նկարված թերթերը համարակալվում են, կինոնկարահանող ապարատով օպերատորը պլաստմասսայի թղթի վրա նկարված պատկերները փոխադրում է կինոժապավենի վրա։

Մեծ զգուշություն և ճշգրտություն է պահանջվում խոսակցական, երաժշտական մուլտ նկարների ստեղծման դեպքում. ասենք, մկները պարում են, խոսում։ Շարժումը պետք է համապատասխանի խոսակցության առոգանությանը և երաժշտության ռիթմին։

Եթե մուլտ նկարներում գործող անձինք տիկնիկներ են, ապա այս դեպքում պատկերները չեն նըկարվում։ Գործողությունը կատարվում է խաղալիքի մեծության պատրաստի դեկորացիայում (տնակ, անտառ, գետակ և այլն)։

Նկարվում է արջուկի ճանապարհորդությունը։ Անտառի խորքում, փայտի ճյուղերից պատրաստվում է տնակը, որտեղ ապրում է բրդոտ արջուկը։ Սկզբում նկարահանվում է անտառի փոքրիկ տնակը։ Ապա ձեռքով մի փոքր բաց ենք անում տնակի դուռը և նորից նկարահանում։ Երրորդ նկարահանման ժամանակ դուռն ավելի է բացված, երևում է արջի դունչը, չորրորդում՝ գլուխը, մի ոտքը, հինգերորդում՝ մյուս ոտքի մի մասը և այսպես աստիճանաբար ընդհատումներով նկարահանվում է՝ թե ինչպես է արջը դուրս գալիս տնակից։ Որպեսզի ավելի պատկերավոր լինի, վերցնենք մի որևէ պատրաստի կինոնկարի ժապավեն։ Մենք կըտեսնենք միանման պատկերների կրկնողություն, բայց արդյո՞ք դա այդպես է։ Իհարկե՝ ոչ, այդպես է թվում միայն առաջին հայացքից. առաջին պատկերի շարժումը նման չի երկրորդին, քանի որ տեղաշարժ կա առարկայի դիրքում։ Հապա ինչպե՞ս է ստացվում շարժումը էկրանի վրա։

Կինոցուցադրման ժամանակ էկրանի վրա մեկ վայրկյանում իրար են հաջորդում շարժումը պատկերող 24 կադր։ Մենք չենք նկատում անցման պահը, այլ տեսնում ենք առարկայի պատկերը շարժման մեջ։

Մուլտ նկարների ժամանակ հիմնական աշխատանքը բաժին է ընկնում նկարիչներին, որոնց թիվը մեկ ֆիլմում հասնում է 10—15 հոգու։ Այդ նրանք են ստեղծում մանուկներին այնքան սիրելի վախկոտ շլդիկի, գող կաչաղակի, խորամանկ աղվեսի կերպարները, որոնք «լեզու» են առնում դերակատարների օգնությամբ։

ԳԼԱՍԵՎՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Կինոռեժիսոր)

Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



# ԳՈՅԱՅԻ ԴԱՇՈՒՅՆԸ

Բաց պատուհանից ներս ընկնող լույսը լուսավորում է շքեղորեն կահավորված սենյակի բոլոր անկյունները... Բացվում է դուռը, և ներս է մտնում կզակը թուխ աղվամազով ծածկված մի պատանի։ Փափուկ գորգը խլացնում է նրա ոտնաձայները։

— Սենյոր... — ասում է նա և նայում շուրջը։

Թավշե, խոր բազկաթոռի մեջ ընկղմված ծերունին չի արձագանքում պատանու ձայնին։

— Սենյոր Ֆրանցիսկո, — կրկնում է բարձրահասակ պատանին՝ դիպչելով նրա ձեռքին։

Ֆրանցիսկո Գոյան հանդարտ թեքում է գլուխը։

— Մարդ եկա՞վ, այո՞, — հարցնում է նա։ — Ասա, որ ես շատ հոգնած եմ։ Մի քիչ ուշ թող գա... Կամ, ավելի լավ է՝ վաղը։ Շատ քիչ է իմ ժամանակը... — կարծես ինքն իրեն ավելացնում է նա՝ հառաչելով, իսկ հետո, կարծես ինչ-որ բան հիշելով՝ հարցնում է նորից. — Իսկ սոխակները երգու՞մ են, ժակ։

Պատանին գլխով դրական նշան է անում։ Գոյան մտազբաղ դուրս է նայում պատուհանից։ Գարուն է արդեն։ Ծառերը պուրակներում կարծես բաց կանաչ ամպերի նման օրորվում են քամուց։ Զինջ երկնքում ծիծեռնակները աղեղներ են գծում։ Փթթում են վարդենիների առաջին կոկոնները...

Գոյայի համար ձայների աշխարհը վաղուց է դադարել գոյություն ունենալուց։ Նրան ճնշում է լռությունը և դատարկությունը։ Իր կրած տառապանքների պատճառով, մարդկանց աչքին նա դարձել էր մի տեսակ «տարօրինակ» մարդ։ Բոլորը խոսում էին նկարիչ Գոյայի մասին, բայց ոչ ոք չէր զգում տարագիր Գոյայի հոգեկան վիճակը։ Չորրորդ անգամն է ահա, որ նա գարունը դիմավորում է ոչ թե հարազատ Իսպանիայում, այլ ֆրանսիական Բորդո քաղաքի ծայրամասում։ Նույնիսկ գիշերները, քնի մեջ նա չէր կարողանում մոռանալ «Կինտա դել Սորդին» («Համրի տունը»), մոռանալ Սարագոսան, Մադրիդը։ Չէր կարող մոռանալ իր հայրենիքը... Նկարիչը այնտեղ է թողել իր հոգին, սերը, իր ժողովրդի ուրախությունների ու պայքարի հետ կապված ամբողջ ոգեշնչանքը։ Իսկ այժմ պատուհանի մոտ նստած է ալեհեր Ֆրանցիսկո Գոյան։

Որքա՜ն արագ, աննկատելի կերպով արագ անցավ կյանքը...

Ֆրանցիսկո Խոզե դե Գոյան երազում է գեթ մեկ անգամ էլ լսել ծղրիդների ճռճռոցը և այն թախծոտ երգերը, որ երգում են իր գյուղի՝ Ֆուենդեթոդոսի գյուղացիները։ Նա ուզում է թափառել հարազատ Արագոնում, որտեղ խորշակը ոչնչացնում է ցորենի վերջին հասկը։ Նա երազում հաճախ է տեսնում աղմկոտ ու խայտաբղետ կառնավալների բազմությունները և դեպի ցուլերի ռունոցը սուրացող մարդկային գեղեցիկ հորձանքները... Եվ, լայնեզր գլխարկով, բարեկազմ, երիտասարդ ցլամարտիկը թափահարում է իր թիկնոցը և ճարպկորեն ետ ցատկում կատաղած գազանի հարձակումներից։ Դա հենց ինքն է՝ Ֆրանցիսկո Գոյան։

— Վիվա՜, Ֆրանցիսկո ցլամարտիկ... Ֆրանցիսկո ցլամարտիկ...— լսվում են ուժգին բացականչություններ, և կրկեսի հրապարակը ծածկվում է ծաղիկներով։

Ոչ ոք չի զգում կիզիչ արևի տոթը։ Միայն ժանեկավոր հովհարներն են զովություն փչում թուխ իսպանուհիների շոգից շիկնած այտերին։

Իսկ երեկոյան նկարիչ Գոյան կիթառը ձեռքին, ցլամարտիկների հետ միասին երգում է Սարագոսայի հրապարակներում...

Հիշողություններ։ Անցյալի քաղցր հիշողություններ։ Գոյան սթափվեց։ Մի ժամանակ Սարագոսայում Խոզե Մարտինեսայի տանը տղան կանգնած էր ծնկաչոք։ Նա գունատ էր և հազիվ լսելի ձայնով շշնջում էր. «Տեր աստված, ների՛ր ինձ

իմ մեծ մեղքի համար»... Տղան լսում էր իր դասարանցիների ստնաձայները և ուրախ աղմուկը։ Նա զգում էր, թե ինչպես իր հոգու խորքում աճում էր ատելությունը։ Նրան պատժել էին Քրիստոսին ծխամորճը բերանում, իսկ տիրամորը՝ գեղջկուհու տեսքով նկարելու համար։

Տասնչորսամյա Ֆրանցիսկոն ըմբոստացել էր։ Բայց նրա նկարչության առաջին ուսուցիչը՝ կերպարվեստի ստեղծագործությունների դաժան գրաքննիչը չէր կարո՞ղ նրան ներել։ Պատանին որտեղի՞ց իմանար, որ ութսուն տարի հետո ինկվիզիցիան իրեն դուրս կվտարի իր հարազատ երկրից։

Ֆրանցիսկո Գոյան տխուր ժպտում է։

— Խովենլյանոս... Կինտանա... Սիրելի ընկերներս, որտե՞ղ եք հիմա,— ասում է նա հառաչելով։

Գոյան վեր է կենում, դիտում շուրջը և գնում է դեպի կաղնյա մուգ պահարանը։ Այստեղ պահված են ոչ մեծ, բայց իր համար թանկարժեք, հայրենիքից բերված իրերը։ Խորքում փայլում է երկար ու կեռ կոթով դաշույնը։

Գոյան վերցնում է այն, երկար ժամանակ չի կարողանում աչքը կտրել վրան փորագրված բառերից. «Երկա՛ր, արթնացի՛ր։ Գոյա, 1809 թ.»։ Նա երբեք չի մոռանա այդ զարհուրելի գիշերը։

Ողբերգական օրեր էին։ Իսպանական հեղափոխությունը պարտվել էր։ Նապոլեոնի զորքերը դաժանորեն վրեժ էին լուծում։ Ճնշող մռայլություն էր իջել ապստամբ Մադրիդի վրա։ Պալատական նկարիչ Գոյան այնպես էր անցնում բարիկադների մոտով, որ կարծես մտվեր լիներ։ Նա սեղմում էր դաշույնը, իսկ սիրտը կտոր-կտոր էր լինում։ Սպառնալի լռության մեջ մի ձայն լսվեց, դա կրկնվեց նաև գիշերվա թանձր խավարում։

Հեռվում աչքի նման մի լույս թարթեց։ Փողոցներում ոտնաձայներ լսվեցին։ Նկարչին թվաց, թե մեկն իր ականջին շշնջաց. «Ֆրանցիսկո, դու պետք է տեսնես այդ բոլորը»։ Գոյան նվաղեց։ Ոտնաձայները լռեցին։ Վրա հասավ հեղափոխականների գնդակահարության պահը։

Լապտերի լույսը ընկնում էր հպարտ կանգնած իսպանացիների երեսներին։ Ինչ-որ մեկը երգեց ապստամբների խիզախ երգը։ Ցցված սվինների դիմաց բարձրացան մերկ բռունցքներ։ Իսպանիայի զավակները երգում էին ազատության մասին...

Ֆրանսիական զորքերը սթափվեցին, ապա իջեցրին գլուխներն ու նշան բռնեցին։

Լուսաբացին Գոյան անհաստատ քայլերով ներս մտավ քարե բարձր շենքը։ Ծառայողը անխոս վերցրեց իր տիրոջ թիկնոցը և նրա տանջահար դեմքից ամեն ինչ հասկացավ։

Այդ գիշեր Ֆրանցիսկո Գոյան՝ արքայի առաջին պալատական նկարիչը, սարսափելի, ծանր ճանապարհ անցավ, նա դարձավ հեղափոխության նկարիչը։

Եվ ահա Գոյան չէր ուզում ոչ ոքի տեսնել։ Նրա միակ ուրախությունը վրձիններն ու ներկապնակներն էին։ Նա ստեղծեց 1808 թվականի մայիսի 2-ի ապստամբությունը և բարիկադային մարտի մասնակիցների գնդակահարությունը պատկերող կտավները։ Դրանց մեջ նա արտացոլել է իր ամբողջ կսկիծը, սերն ու հպարտությունը, որ նրա մեջ առաջացրին գնդակահարված վեց հարյուր իսպանացիները։ Բանաստեղծ Կինտանան և բոցավառ հրապարակախոս Խովենլյանոսը վշտակցեցին Գոյային։ Իսկ արքայական պալատում բերանից-բերան անցնում էին այսպիսի շշուկներ.

— Գոյայի աչքին տեսիլներ են երևում, և նա գիշերները պատերի վրա ինչ-որ հրեշներ է նկարում։

— Հիվանդ երևակայություն կամ զուտ խելագարություն,— ասում էին մյուսները։

Բայց «Համրի տան» պատերի վրա հայտնված տարօրինակ որմնանկարների մեջ Գոյան դնում էր իր անսահման զայրույթն ու վրդովմունքը դեպի Կարլոս 4-րդը։ Այդ որմնանկարները մարդկային խղճի բողոքներ էին։ Պալատական նկարիչը ցասումով ու զարշանքով էր նկարում արքային, արքայական տոհմին և նրանց մերձավորներին։ Նրա վրձինը անխնա կերպով մերկացնում էր նրանց շքեղ հագուստների տակ թաքնված հոգու աղքատությունը։

Դրանից հետո անցել են ահա երկար տարիներ...

Ծերացած Գոյան խորաթափանց հայացքով նայում է նկարակալի վրա դրված անավարտ կտավին։ Վերջին ժամանակներս նա շատ ավելի ուշ-ուշ է վրձինը վերցնում ձեռքը։ Ութսուներկուամյա նկարիչը հաճախ է ընկնում հիշողությունների գիրկը։ Նա երբեք արքա էր տեսել իսպանական գահի վրա, տեսել էր երբեք հեղափոխություն, ինկվիզիցիան նզովել էր նրան, իսկ ժողովուրդը՝ փառաբանել։

Տառապանքի ու հուսահատության պահերին են նրա գիտակցության մեջ ծնվել «Երկա՛ր, արթնացի՛ր» բառերը, որ փորագրված են դաշույնի վրա։ Դրանք ուժ և համարձակություն էին տալիս նրա ձեռքերին, լայն հորիզոններ բաց անում նրա մեծ հոգու և խիզախ երևակայության առաջ։ Այդպես է Ֆրանցիսկո Գոյան ստեղծել և մարդկությանը թողել իր ամենալավը՝ նկարները։

Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ

## Երկնագույն ՀՈՒԼՈՒՆՔԸ



ՄԱՐԻԱ ԿՐՑՈՒԳԵՐ

### ՈՒ՞Ր ԿՈՐԱՎ ՀՈՒԼՈՒՆՔԸ

«Ես անպայման պետք է նորից փոքրիկ աղջիկ դառնամ, — շփոթված մտածում էր Կարոլինկան, դռան մոտ կանգնած։ — Ի՞նչ կլինի, եթե ես չգտնեմ հուլունքը։ Իսկ եթե հանկարծ ընկած լինի հատակի՞ն։ Մայրիկն էլ երբեք ինձ ներս չի թողնի։ Հուլունքը կարող է գլորվել և ընկնել որևէ ճեղքի մեջ կամ թե մորաքույր Ագատան տունը մաքրելիս դեն կնետի»։

Բակը լիքն էր երեխաներով։ Ագասյան և Դորոտան «կլաս էին» խաղում։

— Բարև ձեզ, — քաղաքավարությամբ գլուխ տվին նրանք։

— Բարև ձեզ, — պատասխանեց Կարոլինկան՝ հազիվ ծիծաղը զսպելով։

Նա կանգ առավ և չիմացավ ինչ անել։ Իսկ Դորոտան և Ագասյան շարունակում էին խաղալ։

Դորոտան, ինչ որ միշտ, խարդախություն էր անում։ Ոչ, սրան հարկավոր է մի լավ դաս տալ։ Եվ Կարոլինկան չդիմացավ։

— Դու լավ հետևիր նրան, Ագասյա,— ասաց նա,— Դորոտան խարդախություն արեց։ Աչքովս տեսա։

— Ե՞ս խարդախություն արեցի,— զայրացավ Դորոտան։

— Իհարկե, դու,— կրկնեց Կարոլինկան։— Հիմա ես ցույց կտամ, թե ինչպես էիր դու ցատկում։

Եվ երկու ձեռքերով վեր բարձրացնելով վերնազգեստի փեշերը, Կարոլինկան սկսեց ցույց տալ, թե Դորոտան ինչպես էր ցատկում։ Կարոլինկան այնքան տարվեց մի ոտքի վրա թռչկոտելով, որ չնկատեց էլ, թե ինչպես իր շուրջը երեխաների և մեծահասակների մի հսկայական բազմություն հավաքվեց։ Բոլորն ապշած նայում էին։ Հանկարծ Կարոլինկայի ականջին հասավ մոր ձայնը.

— Կարոլի՜նկա, Կարոլի՜նկա։

— Հիմա՛, մայրիկ, գալի՛ս եմ,— պատասխանեց Կարոլինկան՝ խաղն ընդհատելով։ Նա գլուխը վեր բարձրացրեց և տեսավ մայրիկին, որ լուսամուտից դուրս էր նայում։ Աղջիկը ձեռքով արեց մայրիկին.

— Հիմա կգամ, մայրիկ։

Բայց մայրիկը սարսափելի զայրացավ։

— Ներեցեք, ես իմ աղջկան եմ կանչում։— Աղջիկնե՛ր,— դարձավ մայրիկը Դորոտային և Ագասյային,— Կարոլինկային չե՞ք տեսել։ Չգիտեմ, թե ուր կորավ այդ աղջիկը։

«Խեղճ մայրիկ, ինչպե՜ս է անհանգստանում,— մտածեց Կարոլինկան։— Պետք է որքան կարելի է շուտ գտնել հուլունքը և նորից փոքրիկ աղջիկ դառնալ։ Բայց ինչպե՞ս գտնել։ Իսկ եթե ես էլ բոլորովին չգտնե՞մ հուլունքը։ Մտածելն անգամ սարսափելի է»։

Կարոլինկան այնքան տխրեց, որ սկսեց լաց լինել։ Այս բոլորի հետ, նա նաև քաղցած էր։ Լավ կլիներ տուն գնալ և ուտելու մի բան խնդրել։ Բայց ինչպե՞ս։ Միևնույն է, մայրիկը երբեք ներս չի թողնի այդ օտար և տարօրինակ տիկնոջը։

Բայց ի՞նչ է, մայրիկը դու՞րս է գալիս տնից։ Ահա նա հարցուփորձ է անում երեխաներին, թե որևէ մեկը չի՞ տեսել Կարոլինկային։



— Լեշեկ, եթե տեսնես Կարոլինկային, ասա, որ իսկույն տուն գնա։ Դուռը փակ է, բայց, ուր որ է, Ագատա մորաքույրը կվերադառնա։ Իսկ ես գնում եմ հիվանդանոց։

Եվ իրոք, շուտով Ագատա մորաքույրը վերադարձավ։ Նա կանգ առավ դռան մոտ, որ բանալիները հանի պայուսակից։ Այդ պահին Կարոլինկան մոտեցավ նրան։

— Մորաքույր, դու ճանաչում ես ինձ, չէ՞։

— Ներեցեք, բայց ես չգիտեմ, թե ով եք դուք։

— ասաց մորաքույրը։

Սկիզբը՝ նախորդ համարում։



Դա շատ վշտացրեց Կարոլինկային։

— Ախ, մորաքույր, ախր ես Կարոլինկան եմ։

— Կարոլի՞նկան,— զարմացավ Ագատա մորաքույրը։— Սպասե՛ք, սպասե՛ք, ի՞նչ Կարոլինկա։

Մորաքույրը վերջապես գտավ բանալին և բացեց դուռը։ Կարոլինկան առանց որևէ բան ասելու ցատկեց, որքանով թույլ էին տալիս բարձր կրունկները, և հայտնվեց միջանցքում։

— Սպասե՛ք։ Այս ի՞նչ է նշանակում։ Ո՞վ եք դուք,— նրա ներխուժումից վախեցած՝ զայրացավ Ագատա մորաքույրը։

Բայց Կարոլինկան առանց որևէ բան ասելու՝ նետվեց լողարան։ Նա հենց այստեղ, դռան մոտ էր կանգնած, երբ իր հետ տեղի ունեցավ այդ փոփոխությունը։ Ու, երևի, երկնագույն հուլունքը հենց այստեղ էլ վայր է ընկել։

— Դուք երևի քրոջս ամուսնու եղբոր աղջի՞կն եք, այո՞,— սկսեց հետաքրքրվել Ագատա մորաքույրը։

— Ես հիմա ամեն ինչ կբացատրեմ, մորաքույր,— հուսահատված կմկմում էր Կարոլինկան և շարունակում էր ուշադրությամբ զննել հատակը։

— Ահա նա՛, գտա՜,— հանկարծ ճչաց նա։

— Տեր աստված, ի՞նչ պատահեց ձեզ, զարմացավ մորաքույրը։

Բայց այդ հարցին Կարոլինկան ոչինչ չպատասխանեց, նա արագ մոտեցավ և հատակի վրայից վերցրեց հուլունքը։

— Օ, ես ուզում եմ նորից փոքրիկ աղջիկ դառնալ,— շշնջաց նա։

Եվ մի րոպե չանցած, միջանցքում, հատակի վրա նստած էր արդեն փոքրիկ Կարոլինկան։ Ագատա մորաքույրը տեղն ու տեղը քարացավ։

— Կարոլինկա, ինչու՞ ես նստել հատակին։ Վեր կաց, աղջիկս, շորերդ կկեղտոտես։ Բայց ինչո՞ւ ես լաց լինում։

— Որովհետև, որովհետև շատ եմ քաղցած,— հեծկլտալով ասաց Կարոլինկան։ Եվ խելոքն ավելացրեց.— Ինչ լավ է, որ ես փոքրիկ եմ, էլ չեմ ուզում մեծ լինել։

— Աղջիկս, այդ ինչե՛ր ես ասում,— անհանգստացավ Ագատա մորաքույրը։— Հիմա ես քեզ ուտելու բան կտամ։ Իսկ ի՞նչ եղավ այն անծանոթ կինը, որ ներս էր խցկվել։ Գնա՞ց։

— Գնաց, մորաքույր։

— Քեզ համար ի՞նչ պատրաստեմ, Կարոլինկա։ Գուցե ձու՞ եփեմ։

— Օ, շնորհակալություն, մորաքույր,— ուրախացավ Կարոլինկան։— Երկու ձու, շատ կաթ և շատ-շատ կարագով հաց։

— Դե, ձեռքերդ լվա և նստիր սեղանի մոտ։

Դա լողարան գնալու լավ առիթ էր։ Կարոլինկան ուշի-ուշով զննեց հուլունքը։ Նրան թվաց, որ այն նորից է կեղտոտվել։ Նա օճառով զգուշորեն լվաց հուլունքը։

— Քիչ էր մնում ինձ կորցնեիր,— կշտամբանքով շշնջաց հուլունքը։

— Ներիր ինձ,— կմկմաց Կարոլինկան,— բայց ես, ազնիվ խոսք, դիտմամբ չարեցի։ Ես այնքան տխրեցի, երբ... Հիմա քեզ լավ կպահեմ, իմ սիրելի հուլունք,— այդ ասելով Կարոլինկան չորացրեց հուլունքը և խնամքով փաթաթեց թաշկինակի մեջ։ Ինքն էլ արագ լվաց ձեռքերը և վազեց խոհանոց։

## ԱՎՏՈԲՈՒՍԻ ԵՎ ԷԼԻ ՈՒ՛ՐԻՇ ԲԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Մյուս օրն առավոտյան Կարոլինկան ուշ արթնացավ։ Հայրիկը վաղուց էր աշխատանքի գնացել, իսկ մայրիկն արդեն դուրս էր գնում։ Այդ պահին լսվեց դռան զանգի ձայնը։ Պետրիկն էր, նա, որ ապրում էր Կարոլինկայենց վերևում. եկել է հարցնելու, թե կարելի է Կարոլինկայի հետ խաղալ։

— Իհարկե, կարելի է,— խելոքն համաձայնեց մայրիկը։— Միայն թե տունը նորից տակնուվրա չանեք։

— Ո՛չ, ի՜նչ եք ասում, տակնուվրա չենք անի,— հավատացրին նրան Պետրիկն ու Կարոլինկան։

Մայրիկը «ցտեսություն» ասաց և աստիճաններով ցած վազեց։

— Գնանք, գնանք, տեսնենք մայրիկին հաջողվե՞ց ավտոբուս նստել,— ասաց Կարոլինկան և Պետրիկին քարշ տվեց դեպի պատուհանը։

Ավտոբուսի կանգառում անձրևանոցներով մարդկանց մի հսկայական բազմություն էր հավաքվել։ Դե, իհարկե, մայրիկին չհաջողվեց ավտոբուս նստել, որովհետև նրան ետ հրեցին։ Կանգնել է խեղճ մայրիկը անձրևի տակ և թրջվում է։ Կարոլինկան ժպտաց, հիմա մայրիկն անպայման ավտոբուս կնստի, բավական է միայն ձեռքով

դիպչել հուլունքին և ասել այդ ցանկությունը։

Եվ հենց նույն րոպեին մի դատարկ ավտոբուս մոտեցավ կանգառին։ Մայրիկը հերթի առջևում էր կանգնած։ Նա հանգիստ բարձրացավ ավտոբուս և նստեց ամենալավ տեղը՝ պատուհանի մոտ։ Հետո սկսեցին ներս խուժել մնացած ուղևորները։ Ահա մի պառավ կին փորձեց նստել, բայց ինչ-որ մի զզվելի տղա հրեց նրան։

— Ախ, ա՜յ թե կհասցնեի դրա վզակոթին, եթե ներքևում լինեի,— սպառնաց Պետրիկը։

— Ես էլ կուզենայի ներքևում լինել և դրան մի լավ դնքստել.— ասաց Կարոլինկան հուզված, առանց երկար-բարակ մտածելու։

Հենց այդ պահին լուսամուտը բացվեց և Կարոլինկան օդ բարձրացավ ու սավառնելով հայտնվեց ավտոբուսի կանգառում՝ ճիշտ այդ զզվելի տղայի կողքին։ Եվ հիմա փողոցում հավաքվածները հիացած նայում էին, թե ինչպես մի բանտիկավոր փոքրիկ աղջիկ վեր ցատկեց և այնպես հասցրեց այդ լոլոզ տղայի քթին, որ նա գետնին փռվեց, հետո վեր կացավ և սկսեց փախչել։

Կարոլինկան նորից օդ բարձրացավ և, մի րոպե անց, հայտնվեց սենյակում։

— Այ թե լավ դաս տվիր այդ լոլոզին,— ասաց Պետրիկը։— Միայն ես չեմ կարողանում հասկանալ, թե ինչպես հայտնվեցիր ներքևում ու ինչպես ետ եկար։ Դու ոնց որ թե թռչում էիր, հը՞։ Բայց չէ՞ որ մարդ թռչել չի կարող։ Երևի այս բոլորը երազ էր։

— Իսկի էլ երազ չէր։

— Ինչպե՞ս թե։ Հիմա հո չպիտի՞ սկսես ինձ համոզել, որ դու իրոք թռչում էիր։ Չէ՞ որ դա խելքին մոտ բան չէ։

— Իսկ ինչու՞ չպետք է թռչեմ որ.— նեղացավ Կարոլինկան։— Եթե ուզենամ՝ ամեն ինչ էլ կանեմ։ Չե՞ս հավատում։

Այդ րոպեին սենյակ մտավ Ագատա մորաքույրը։

— Ես մի րոպեով դուրս եմ գնում,— ասաց նա։— Զարություն չանեք։ Ոչ մեկի առաջ դուռը չբացեք. ինձ մոտ բանալի կա։

Ագատա մորաքրոջ գնալուց հետո Կարոլինկան նորից կրկնեց.

— Չե՞ս հավատում։ Ես ինչ որ ուզենամ, կանեմ։

— Դե, լավ, լավ,— կասկածանքով փնթփնթաց Պետրիկը,— բավական է փչես։

— Ի՞նչ, փչում եմ հա՞։ Արի գրազ գանք։

— Արի՝ թեկուզ իմ ավստրալիական դրոշմանիշի վրա։

— Շատ պետքս է քո ավստրալիական դրոշմանիշը։ Եթե դու տարվես, գլոբուսդ ինձ կտաս։

— Օհո՜, գլոբուսը։— Գլոբուսը Պետրիկի ամենաթանկագին գանձն էր, և նա չէր ուզում դատարկ տեղը որևէ մեկին զիջել։

— Գլոբո՛ւսը,— կրկնեց Պետրիկը սպառնագին։

— Գլոբուսի վրա գրազ կգայի, եթե դու, օրինակ, կարողանայիր...

Այստեղ Պետրիկը մի րոպե լռեց. մտածում էր, թե ինչ դժվար բան գտնի, որ ընդհանրապես անհնար լինի կատարելը։

— Դե, օրինակ, եթե դու կարողանայիր...

— Դե, ասա՛, էլի, ինչ ես պապանձվել,— շտապեցնում էր նրան Կարոլինկան։

— Հա-ա՞-ա,— իր հերթին հուզվեց Պետրիկը։— Խորամանկն ես հա՜։ Այ դու, երևի չես կարող դառնալ... անտեսանելի։



— Անտեսանելի՞,— Կարոլինկան թոթվեց ուսերը։— Դրանից էլ հեշտ բա՜ն։ Հենց հիմա անտեսանելի կդառնամ։

Եվ նույն րոպեին Կարոլինկան ապակու պես թափանցիկ դարձավ։ Միայն նրա վզից կախված հուլունքն էր փայլում երկնագույն ծաղիկի նման։ Պետրիկը զարմանքից քար էր կտրել։ Հետո սկսեց աղմկել։

— Է, դե դու հենց էնպես... պարզապես թաքնըվել ես։

— Իսկի էլ չեմ թաքնվել,— հենց Պետրիկի կողքին լսվեց Կարոլինկայի ձայնը,— կարո՞ղ ես, բռնիր ինձ։

— Ինչպե՞ս բռնեմ, երբ քեզ չեմ տեսնում։
— Ահա՛, այստե՛ղ եմ,— Կարոլինկան դիպավ Պետրիկի ձեռքին։
Պետրիկը նույնիսկ վախից վեր թռավ։
— Ահա՛,— ցնծում էր Կարոլինկան,— տարա՞, հո տարա՞ գլորուդ։
— Դե, բավակա՛ն է,— գոռաց Պետրիկը։— ասա՛, որտե՞ղ ես թաքնվել։
— Ուրեմն համոզվեցի՞ր, որ անտեսանելի եմ։
— Իսկի էլ ոչ։ Եթե իրոք անտեսանելի ես, ապա մոտեցիր ու վեր բարձրացրու այս բազկաթոռը։
Կարոլինկան բրբջաց.
— Հենց հիմա, խնդրեմ։
Եվ հենց նույն րոպեին բազկաթոռն ասես ինքն իրեն օդ բարձրացավ։ Ճիշտ է, այդ ուղեկցվեց Կարոլինկայի մեղմ փնչոցով՝ որովհետև բազկաթոռը, այնուամենայնիվ, թեթև չէր։
Այո, Պետրիկը վերջապես համոզվեց, որ Կարոլինկան անտեսանելի է։ Նա կանգնել էր զարմանքից բերանը բաց արած։
— Էլ ի՞նչ կհրամայեիր անել,— լսվեց Կարոլինկայի սիրալիր ձայնը։
— Այո... Ուրեմն... Կարոլինկա,— հանկարծ բացականչեց Պետրիկը,— իսկ ես կարո՞ղ եմ անտեսանելի դառնալ։
— Դու՞,— Կարոլինկայի ձայնի մեջ տարակուսանք կար,— ճիշտն ասած, ինքս էլ չգիտեմ... Պետք է փորձել։ Ուշադրություն։ Հիմա դու էլ երևի անտեսանելի դառնաս։ Դու արդեն անտեսանելի ես։ Ոչ, ինչ-որ չի ստացվում։ Դու արդեն պետք է անտեսանելի լինեիր, բայց ես քեզ էլի տեսնում եմ։
— Ես էլ քեզ եմ տեսնում,— ասաց Պետրիկը։
— Ինչպե՞ս կարող ես ինձ տեսնել, երբ ես դեռ անտեսանելի եմ,— զարմացավ Կարոլինկան։
Այդ պահին դուռը բացվեց և ներս մտավ Ագատա մորաքույրը։
— Կարոլի՛նկա,— կանչեց նա, դռների մեջ կանգնած։
— Լսո՛ւմ եմ, մորաքույր,— ձայն տվեց Կարոլինկան։— Մորաքույր, ինձ և Պետրիկին ուտելու բան չե՞ս տա։
— Իհարկե, կտամ, միայն թե վերջ տվեք պահմտոցի խաղալուն և եկեք խոհանոց, ես ձեզ հաց ու երշիկ կտամ։— Եվ սենյակից դուրս եկավ։
— Ուռա՜,— բացականչեց Պետրիկը, հիացմունքից թռչկոտելով։— Ուռա՜, ուրեմն մենք անտեսանելի ենք։
— Դու համոզվա՞ծ ես,— հարցրեց Կարոլինկան։
— Իհարկե։ Մորաքույրդ կարծում էր, թե մենք թաքնվել ենք, իսկ մենք համարյա թե նրա կողքին էինք։
— Ճիշտ է,— շշնջաց Կարոլինկան,— բայց ինչու՞ եմ ես տեսնում քեզ, դու էլ՝ ինձ։
— Երևի, անտեսանելի մարդիկ տեսնում են իրար,— ասաց Պետրիկը,— դե արի հիմա գնանք բակ...

(Շարունակելի)

# ՄԻՆՉԵՎ ԲԺՇԿԻ ԳԱԼԸ

Ամենքին հասկանալի է, իհարկե, որ բոլոր վնասվածքների դեպքում չափազանց կարևոր է արագ և անմիջապես կանգնեցնել արյունահոսությունը, քանի որ շատ արյուն կորցնելու դեպքում, օրգանիզմում առաջ եկած արյան խիստ պակասը կարող է պատճառ դառնալ մահվան։

Համեմատաբար հեշտ է կանգնեցնել արտաքին արյունահոսությունը, իսկ ներքին արյունահոսության դեպքում, երբ վնասված ներքին օրգանից կամ արյունատար անոթից արյունը հոսում է դեպի օրգանիզմի խոռոչները, պետք է մարմնի համապատասխան տեղամասի վրա սառը բան դնել, բժիշկ կանչել և հիվանդին զգուշորեն հիվանդանոց տեղափոխել։

Արյունահոսությունը լինում է զարկերակային և երակային, նայած թե ինչպիսի արյունատար անոթից է դուրս հոսում արյունը։ Անշուշտ, առավել վըտանգավոր է զարկերակային արյունահոսությունը։ Այս դեպքում արյունը վերքից ցայտում է շատրվանի նման, ունի վառ կարմիր գույն՝ թթվածնով հարուստ լինելու պատճառով, և դժվարությամբ է դադարեցվում։ Վերքին դրված վիրակապը շատ շուտ ներծծվում է արյունով։ Երակային արյունը, ընդհակառակը, հոսում է դանդաղ, ունի մուգ կարմիր գույն։

Բուռն արյունահոսության դեպքում առաջին բուժօգնության նպատակն է՝ անհապաղ կանգնեցնել արյունը մինչև բըժըշկի գալը։ Դրա համար պետք է մատով սեղմել արյունատար անոթը վերքից վերև կամ ներքև, իսկ վերքի վրա դնել ճնշող վիրակապ։ Վերջույթներից (ձեռքից, ոտքից) տեղի ունեցող ուժեղ արյունահոսության դեպքում, ծայրանդամի հիմքում դնում են ոլոր, այսինքն այն ամուր կապում ռետինե խողովակով, բինտով, ծայրահեղ դեպքում՝ բարակ պարանով։ Ոլորի

տակ պետք է դնել մի քանի տակ ծալած մառլյա կամ փափուկ շոր, որպեսզի մաշկը չըվնասվի սրսկումից: Անհրաժեշտ է բուժհիմնարկին տեղյակ պահել, թե երբ է դրված ոլորը: Այն կարելի է թողնել վերջույթի վրա ամենաշատը մինչև երկու ժամ, որից հետո պետք է հանել, այլապես կառաջանա վերջույթի գանգրենա (մահ):

Ինչպե՞ս վարվել հողախախտ-



ման դեպքում: Խորհուրդ չի տրըվում հողը տեղը գցելու փորձեր կատարել: Դա բժշկի գործն է, հակառակ դեպքում ոչ մասնագետը կարող է գործն ավելի բարդացնել, դրա հետ միասին անտանելի ցավ պատճառելով հիվանդին: Հոդախախտի դեպքում պետք է աշխատել վնասված վերջույթի համար ապահովել առավելագույն հանգիստ վիճակ և տուժածին առանց ուշացնելու տանել բուժհիմնարկ:

Ավելի դժվար է գործը ոսկրի կոտրվածքների դեպքում: Սրանք լինում են բաց և փակ: Փակ կոտրվածքի դեպքում մաշկի ամբողջականության խախտում չի լինում: Ապաքինման տեսակետից ավելի վտանգավոր է ոսկրի բաց կոտրվածքը, երբ կոտըրվածքի շրջանում վնասվում են մաշկը և մյուս փափուկ հյուսվածքները: Այդ ժամանակ առաջացած վերքից մանրէները թափանցում են մինչև կոտրված ոսկրը և այնտեղ առաջացնում բորբոքում ու թարախակալում:

Ոսկրի կոտրվածք կասկածելիս, վերջույթն առանց ուշացնելու պետք է ֆիքսել դողով, ընդ որում այնպես, որ վերջինն ընդգրկի կոտրվածքից վերև ու ներքև գտնված հոդերը: Որպես դող կարող է ծառայել բարակ տախտակի կամ ֆաների կտորը, ձեռնափայտը և նման այլ իրեր: Տուժածին բուժհիմնարկ պետք է տեղափոխել վերջույթն անպայման դողով ֆիքսված վիճակում, այլապես ոսկրի բեկորները կըտեղաշարժվեն, կվնասեն արյան անոթներն ու ներվերը և բուժումը խիստ կդժվարանա:

Երեխաների մոտ հաճախ պատահում է արյունահոսություն քթից: Շատերը չիմանալով ինչպես վարվել, երեխաներին օգնելու փոխարեն վնաս են պատճառում: Սխալ է, օրինակ, արյունահոսությունը դադարեցնելու նպատակով քիթը լվանալը կամ ուժեղ մաքրելը, որովհետև այդ ժամանակ դուրս են գալիս և հեռացվում են վնասված անոթներում գոյացած արյան մակարդուկները, որոնք խցանում են ու դադարեցնում արյունահոսությունը: Քթի արյունահոսության ժամանակ սխալ է նաև գլուխը ետ թեքելը, քանի որ այդ դեպքում արյունը քթի հետին անցքից լցվում է ըմպանի մեջ, որտեղից կարող է



անցնել շնչափողը, առաջացնելով հազի նոպա և այլ բարդություններ:

Քթից արյունահոսությունը դադարեցնելու համար պետք է գլուխը թեթևակի թեքել աջ, բութ մատով և ցուցամատով սեղմել քթի փափուկ մասը: Այսպիսով



հեշտությամբ կարելի է դադարեցնել արյունահոսությունը, մանավանդ, եթե արյունահոսող տեղը գտնվում է քթի առջևի մասում: Իսկ եթե դա չի օգնում՝ անհրաժեշտ է քիթը մաքուր մետաղաձողի օգնությամբ ամուր տամպոնել մառլյայով, ապա հիվանդին կիսապառկած դիրք տալ և քթամեջքին սառը թըրջոց դնել:

Եթե ոչ մի ձևով չի հաջողվում արյունը կանգնեցնել, պետք է բժիշկ կանչել կամ հիվանդին բուժարան տանել, որովհետև արյան մեծ կորուստը վտանգավոր է:

Երբեմն երեխաների ըմպանի, քթի կամ ականջի մեջ են ընկնում մանր առարկաներ: Դա կարող է վտանգավոր հետևանքներ ունենալ: Նման դեպքերում կարևորն այն է, որ տուժածը և նրա ընկերները իրենց չկորցնեն, սխալ վարմունքով ավելի խորը չհրեն այդ առարկաները: Պատահական գործիք օգտագործել չի կարելի: Քթի մեջ օտար մարմին ընկնելիս պետք է երեխայի մի քթանցքը սեղմել և պահանջել, որ նա մյուսով ուժեղ արտաշնչի: Բացի դրանից, թըղթի կամ փետուրի ծայրով պետք է փորձել գրգռել քթի լորձաթաղանթը, որից ուժեղ փռշտոց է առաջանում և առարկան այդտեղից դուրս թռչում:

Ավելի զգույշ պետք է լինել ականջը օտար մարմին (մանր քար, կոճակ, միջատ և այլն) ընկնելու դեպքում:

*ՌԱՖԱՅԵԼ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*
*(Դոցենտ)*



**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ**



*Շապիկի առաջին էջը՝ նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*





## ԲԱՌԱՇՂԹԱ–ԽԱՉԲԱՌ

### ԲԱՌԱՇՂԹԱ

1. Աշխարհի ամենաուժեղ մարդը։ 2. Թեթև ատլետիկայի ձև։ 3. Ֆուտբոլային ակումբ։ 4. Ֆուտբոլային թիմ՝ ՍՍՌՄ առաջնության «Ա» խմբում։ 5. Հրաձգության մրցումներում օգտագործվող գույք։ 6. Ֆուտբոլիստ՝ Մոսկվայի «Սպարտակ» թիմում։ 7. Սովետական անվանի ֆուտբոլիստ։ 8. Ժամանակակից հըն-




Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41. Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 07916։ Պատվեր՝ 1837։ Տպաքանակ՝ 13 600։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/XI 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։
Գինը 20 կ.

գամարտի աշխարհի քառակի չեմպիոն։ 9. Սպորտային խաղ։ 10. Սպորտային ընկերություն։ 11. ՍՍՌՄ բասկետբոլի օլիմպիական թիմի անդամ։

### ԽԱՉԲԱՌ

Ուղղահայաց— 2. Սովետական մարմնամարզիկ 16-րդ և 17-րդ օլիմպիական խաղերի չեմպիոն։ 3. Սպորտային ընկերություն։ 4. Սպորտային պարգև։ 5. Խաղ։ 8. Սպորտային գործիք։ 9. Տրենըրագնաց, սպորտի վաստակավոր վարպետ։ 14. Շախմատային ֆիգուր։ 15. Ձմեռային սպորտաձև։ 16. Սովետական չմշկորդ, ձմեռային 9-րդ օլիմպիական խաղերի ոսկե մեդալակիր։ 17. Սպորտի ձև։ 18. Շախմատի գծով աշխարհի էքս-չեմպիոն։ 19. Սպորտային գույք։

Հորիզոնական —1. Շախմատային ֆիգուր։ 3. Հունգարական գրոսմայստեր։ 6. Ժամանակակից հնգամարտի, 17-րդ օլիմպիական խաղերի արծաթե մեդալակիր։ 7. Շախմատային տերմին։ 10. Սովետական գրոսմայստեր։ 11. Սպորտային մրցության վերջնագիծ։ 12. Հայ անվանի մարմնամարզիկ։ 13. Սովետական գրոսմայստեր։ 20. Ռուսական շախմատային դպրոցի հիմնադիր, հայտնի շախմատիստ։ 21. Ֆուտբոլային թիմ։ 22. Հեռացատկի գծով Մելբուռնի օլիմպիական խաղերի չեմպիոն։ 23. Սովետական անվանի վազորդ, օլիմպիական 16-րդ խաղեր՝ չեմպիոն։ 24. Նեգր բարձրացատկորդ, աշխարհի նախկին ռեկորդսմեն։

Կազմեց՝ ՄԱՐՏՈՒՆ ՔՈՉԱՐՅԱՆԸ
(Սպորտի վարպետ)

### ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ինքը՝ փայտ,
Մեջը՝ ծակ,
Մեջքի գոտին՝
Հազար տակ,
Կացին չէ՝
Փայտ է տաշում,
Աքցան չէ՝
Մեխ է քաշում։

ԱՐԱՄ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

## ԹՎԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ




Այստեղ կա 9 պարկ։ Ծայրերի պարկերը առանձին են դրված։ Հետո գալիս են զույգ պարկերը, իսկ կենտրոնում իրար են միացված երեք պարկ։

Եթե բազմապատկենք զույգ պարկերի վրա նշված 28-ը 7-ով, որը նրա հարևան թիվն է, գումարը կստացվի 196. դա համապատասխանում է կենտրոնի երեք պարկերի վրա գրված թվին։ Սակայն նույն պատասխանը չի ստացվում, երբ աջ եզրի պարկի վրայի թիվը բազմապատկում ենք 34-ով։

Պահանջվում է պարկերը վերադասավորել այնպես, որ նույն ձևով բազմապատկելիս երկու դեպքում էլ ստացված թիվը համապատասխանի երեք պարկերի թվանշաններին։

Առաջարկ՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



## «ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԱՄՍԱԳՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ»

### ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Մրցանակաբաշխությանը մասնակցել է 204 դպրոցական՝ Հայաստանից, Լեռնային Ղարաբաղից, Ախալքալաքից, Աբխազիայից և Սփյուռքից։ Նրանցից 104-ը արժանացել են առաջին կարգի հուշաթերթի, 89-ը՝ երկրորդ կարգի, իսկ 11-ը մրցանակաբաշխությունից դուրս են մնացել՝ հարցերին սխալ պատասխանելու կամ պատասխանները ժամանակին չուղարկելու պատճառով։

Առաջին կարգի հուշաթերթ ստացողները պարգևատրվել են նաև նվերներով։

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 8

«ԲԱՌԱՇՂԹԱ ԽԱՉԲԱՌ»— 1. Բյուրական։ 2. Նիագարա։ 3. Արագած։ 4. Նեղոս։ 5. Սիամանթո։ 6. Ոսկի։ 7. Այբեկ։ 8. Արգոն։ 9. Մալի։ 10. Յաշմա։ 11. Նորք։ 12. Սոխակ։ 13. Մկրատ։

# Ոսկե աշուն

Խոսք՝ ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆԻ

Երաժշտ. ԷԴՎԱՐԴ ՀԱԿՈԲՅԱՆԻ (Եգիպտոս)

Ոսկե աշուն, սեպտեմբեր,
Դպրոցական ուրախ կյանք,
Նոր երազներ, Նոր գրքեր
Ու ծրաջան աշխատանք: } 2 անգամ

Ո՞վ է, ո՞վ է մեզ կանչում
Զվարթ ձայնով իր հստակ:
Զա՜նգ, այդ դո՞ւ ես ղողանջում
Դպրոցի լույս հարկի տակ... } 2 անգամ

Քո այդ քրքիջը գնգուն,
Այդ ղողանջը աղմկոտ,
Հարազատ է մեր հոգուն,
Մեր սրտերին այնքա՜ն մոտ... } 2 անգամ

Արագածի զով լանջին,
Ծաղիկների գրկի մեջ,
Մեր ականջը քո կանչին՝
Քեզ հիշել ենք մենք անվերջ: } 2 անգամ

Կրկնել առաջին տունը:

Alla marcia

f marcato sempre

poco rit.

D.C.